ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆՔ «ԱՆԱՀԻՏ»Ի · — ԹԻՒ 2

ՄԿՐՏԻՉ ՊԵՇԻԿԹԱՇԼԵԱՆԻ

# ՔԵՐԹՈՒԱԾՆԵՐՆ

ու

# ՃԱՌԵՐԸ

ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐՈՎ

ՀՐԱՏԱՐԱԿԵՑ

ԱՐՇԱԿ ՉՕՊԱՆԵԱՆ



ՓԱՐԻԶ

ՏՊԱՐԱՆ «ԱՆԱՀԻՏ»

1904

Պէշիկթաշլեանի գործերուն առաջին տպագրութիւնը, որ լոյս ելած է Կ. Պոլսոյ մէջ 1870ին, շատոնց ի վեր սպառած ըլլալով, կարեւոր նկատեցինք նոր — եւ աւելի ամբողջական ու խնամեալ — տպագրութեամբ մը զանոնք տարածել հայ հասարակութեան մէջ։ Այս հատորը կը պարունակէ ներբուածներն ու ճառերը։ Ուրիշ հատոր մը պիտի պարունակէ թատերգութիւնները։

Այս երկրորդ տպագրութիւնը առաջինին պարզ կրկնութիւնը չէ. այստեղ աւելցուած են երեք տաղեր որ առաջնոյն մէջ չկային. գրաբար ներբուածներուն քով դրինք նաեւ աշխարհաբար թարգմանութիւնը. շատ մը նօթերով ջանացինք լուսաւորել ներբուածներէն ոմանց ծնունդ տուող պարագաները. ու դրինք հայերէն բառական թարգմանութիւնը այն եւրոպական մէկ քանի ներբուածներուն որոնց ազատ նմանողութիւններն են Պէշիկթաշլեանի բանաստեղծութիւններէն ոմանք։ Վերջապէս մաքրեցինք այս տաղերն ու ճառերը այն անհամար վրիպակներէն որոնցմով այլայլուած են անոնք առաջին տպագրութեան մէջ։

Ա. Չ.

## Ա

## Ի ԲԵՐԱՆՈՅ ՄԱՆԿԱՆ
## ԱՌ ՊԱՇՏՊԱՆՈՒՀԻՆ

Տէր, աղբիւր յորդ բարեաց,
Դեռաբոյս իմ կենաց՝
Գործովըն ամբաւ՝
Հայրաբար գութ կալաւ ։

Ո՛վ առատ պարգեւաց ․
Զի կրկին շնորհեաց
Հրեշտակս պահապանս՝
Հովանի մանկութեանս ։

---

### ՄԱՆԿԱՆ ԿՈՂՄԷՆ ԱՌ ՊԱՇՏՊԱՆՈՒՀԻՆ

Տէրը, բարիքներու յորդ աղբիւր, իր անբաւ գործովը, իմ դեռաբոյս կեանքիս հայրաբար գութ ունեցաւ ։

Ո՛վ առատ պարգեւում․ մանկութիւնս հովանաւորելու համար, ան ինծի շնորհեց երկու պահապան հրեշտակ ։

Ինձ զուարթնոյն ըղտիպար
Ջիոկոնէին տալով մայր ։
Որպէս զով շաղ հեղիկ՝
Դալարեացըն փափկիկ,

Այնպէս զութ իւր եւ խնամք
Անուշիկ են ինձ կեանք ։
Հե՛ղ եւ դու քաղցրաբուղխ
Վեհ նորայն ի գըլուխ՝

Շընորհաց քոց ըզցօղ,
Ո՛վ անմահդ ըՍտեղծող ։

Բ.

## ՆՈՒԱԳ Ի ՄԱՀՆ ՅԻՍՈՒՍԻ

Կայր բարձրացեալ անմեղն Յիսուս յիւր փրկական ի խաչին՝
Բոսորատիպ յարեան թաթաւ գեղեցկագեղ իւր մարմին.
Այլ յայն տագնապ չարալըլուկ արտասուաթոր զաչս ի վեր՝
« Հայր, թո՛ղ զոցա », մեծաբարբառ առ Տէրունին աղերսէր ։

---

Տալով ինծի հրեշտակային Իսկուհին իբր մայր ։ Ինչպէս զով հեղ՚կ ցօղը՝ փափկիկ դալարիքին,

Այնպէս ալ էնոր գութն ու խնամքը ինծի համար կեանք են անուշիկ ։ Դուն ալ, ո՛վ անմահ Ստեղծող,

Հոսեցո՛ւր քու շնորհներուդ քաղցրաբուխ ցօղը էնոր վեհ գլխուն վրայ ։

### ՅԻՍՈՒՍԻ ՄԱՀԸ

Անմեղ Յիսուսը բարձրացած կը կենար իր փրկական խաչին վրայ, գեղեցիկ մարմինը բոսորատիպ արիւնի մէջ թաթխուած ։ բայց այն չարալլուկ տագնապին մէջ արտասուաթոր աչքերը վեր վերցուցած՝ տիրոջը կ՚աղերսէր ։ «Հայր, ներէ՛ անոնց» ։

Զիւր մօտալուտ ըզգալըն մահ տարերք ընդհուպ գուժեցին․
Թընդաց երկիր, որոտընդոստ ձայն արձակեաց ահագին․
Դըղըրդեցան լերինք հիմամբք, չանթիւ տեղեալ հըրացան՝
Երկրի սպառնան աշխարհաւեր կորուստ ածել, անդարման։

Ընդէ՞ր աղէ՛, մանկանացո՛ւք, ահիւ կապեալ մեծապէս՝
Միտք ալեկոծ եւ ի մըռայլ յուզիք խորհուրդս ի պէս պէս․
Ո՞ւր խուսափէք խիստ տագնապաւ՝ անքոյթ խնդրել ձեզ դադար,

Ահա Աստուած մընայ մահու դիւրին յաղթել չարաչար․
Հօր բարձրելոյն այն ինչ ի ձեռս զիւր սուրբ զհոգին աւանդեաց՝
« Մահըն կորեաւ, զերծաւ Ադամ» գոչեաց հրեշտակն ի բարձանց։

Գ․

## ՑԸՆՏՐՈՒԹԻՒՆ Վ․ Հ․ ԳԷՈՐԳԱՅ ՎԱՐԴԱՊԵՏԻ ԱԲԲԱՅ ՄԽԻԹԱՐԵԱՆ ՈՒԽՏԻՆ

ԵՐԳ

Ո՛ Հայրենիք, ուրախութեան ա՛ռ երգ յոսկի ի քընար,
Եւ դուք, ծընո՛ւնդք պերճ դիւցազանց, ելէ՛ք ի թինդ գեղապար․

---

Ընդհուպ տարրերն անոր մօտալուտ դառն մահը գուժեցին․ երկիրը թնդաց, որոտընդոստ ահագին ձայն արձակեց․ լեռներն իրենց հիմէն դղրդեցան, հրացայտ չանթեր տեղալով, ու սպառնալով աշխարհաւեր անդարման կորուստ բերել երկրին։

Ինչո՞ւ, ո՛վ մանկանացուներ, երկիւղով սասանած, մտքերնիդ ալեկոծ, պէսպէս մռայլ մտածմանց մէջ կը ծփաք․ ո՞ւր կը փախչիք տագնապագին՝ ձեզի ապահով հանգստարան մը փնտռելու․ ահա Աստուած մահուան դիւրին չարաչար յաղթել կը պատրաստուի․ բարձրեալ Հօր ձեռքերուն մէջ հազիւ թէ աւանդեց իր սուրբ հոգին, «Մահը կորաւ, Ադամ փրկուեցաւ» գոչեց հրեշտակը վերէն։

## Վ․ Հ․ ԳԷՈՐԳ ՎԱՐԴԱՊԵՏԻՆ ՄԽԻԹԱՐԵԱՆ ՈՒԽՏԻՆ ԱԲԲԱՀԱՅՐ ԸՆՏՐՈՒԵԼՈՒՆ ԱՌԹԻՒ

ԵՐԳ

Ո՛վ Հայրենիք, ոսկի քնարի վրայ ուրախութեան երգ հնչեցո՛ւր, եւ դուք, պերճ դիւցազներու զաւակնե՛ր, ելէ՛ք աղուոր պար բռնեցէ՛ք․

Ոգի անմահ այսօր յերկիր ձայն հընչեցոյց աւետեաց,
Ըզարդմութեան խաւարազգեստ քօղ փարատել ի դիմաց.
Խաղաղութեան սառ թեւաւոր զեփիւռ չընչեալ քաղցրասիւք,
Եւ ժամանել մեզ գարնայնոյ թըռչնոց ի հեշտ դայլայլիկ,
Փողեն ի մեզ ըղցանկալւոյն չըքեղ փառաց զաւետիս.
Օ՛ն, ցընծութեան առեալ նըւագ ելէ՛ք ի պար հանդիսիս.
Աղէ՛ եւ դու, Մուսա՛յդ անմահ, երգեա՛ ո՞րպէս մինչ ի սուգ
Նըստեալ Ոգին Հայաստանեայց դառըն ցօղէր արտասուք,
Ի լուր փառացըն Գէորգայ եւ ի նորայն պերճ համբաւ՝
Մերժեալ ըզսուգն աղէխորով զըւարթ յոտին կանգնեցաւ:

Այրարատայ հանդէպ լերին է լայնածիգ դաշտավայր՝
Գեղազըւարթ նըստեալ ի գիր, ծաղկեալ ի բոյս ի դալար.
Մանուածաւալ անդ ի պըտոյտ գընայ Երասխ սըրընթաց,
Եւ ի ծաղկունս բազմաբուրեան պըճնին ափունք գեղձպանծ.
Ի միջավայր դաշտին այնմիկ լայնատարած է անտառ,
Ուր թաւոստեան նոճիք ըռխուր երկայնաձիգ կան ի շար.
Ամբարձուղէշ յաղթ եղեւին խոր կանդաղեալ ի յերկրի՝
Զըւարթարար ի սիւք հեզիկ ձըգէ ախորժ հովանի,
Եւ անդանօր յաւեժական հնչեալ զեփիւռ քաղցրաշունչ՝

---

անմահ ոգի մը այսօր երկրի վրայ աւետող ձայն մը բարձրացուց եւ տրտմութեան խաւարազգեստ քօղը փարատեց մեր դէմքերէն. խաղաղարեր թեւաւոր զեփիւռը որ քաղցրօրէն կը շնչէ հոս, եւ գարնան նորեկ թռչուններուն հեշտ դայլայլները ցանկալիին չքեղ փառքին աւետիսը կը փողեն մեզի. օ՛ն, ցնծութեան նուագներ հնչեցնելով այս հանդէսին մէջ պար բռնեցէ՛ք ելի՛ր դուն ալ, անմահ Մուսա՛, երգէ՛ թէ ի՞նչպէս Հայաստանի Ոգին, որ սուգի մէջ նստած դառն արտասուք կը ցօղէր, Գէորգի փառքն ու պերճ համբաւը լսելով՝ աղեխորով սուգը մէկդի նետեց ու զուարթ ոտքի կանգնեցաւ:

Արարատ լերան դիմացը կայ լայնածիգ դաշտավայր մը, գեղազուարճ դիրքի մը վրայ նստած, բոյսերով ու դալարիքով ծաղկած. սրընթաց Երասխը մանուածաւալ պտոյտ կուգայ հոն, ու անոր գեղապանծ ափերը բազմաբուրեան ծաղիկներով կը պճնուին. այն դաշտին մէջտեղը անտառ մը կայ լայնատարած, ուր թաւոստեան տխուր նոճիներ երկայնաձիգ շարքով մը կը ցցուին. ամբարձուղէշ յաղթ եղեւինը, հողին մէջ խոր հաստատուած, զուարթարար հեզիկ սիւքով՝ ախորժ հովանի կը ձգէ. եւ քաղցրաշունչ զեփիւռը, հոն միշտ հնչելով,

Շարժէ զտերեւըս վարսագեղ ծառոցըն մեղմ ի մըրմունջ.
Համատարած խոր լըռութիւն եւ մութ անեղ եւ նըսեմ՝
Ո՛հ, ի տըխուր միայնութեան կան ի տեղին անդ վըսեմ.
Եւ հոյակապ պերճ մահարձանք, կոթողք չիրմաց մեծասքանչ՝
Աստ անդ ի ցիր կիսականգուն կան ի տեսիլ վեհապանծ.
Անդ դիւցազունք մեր, որ երբեմն արիական ի հանդէս՝
Կազմեալ ի կռիւ անեղասաստ գուպարայաղթ ասպարէզ՝
Գոռ նահատակք ընդ արքայից բերեալ անեղ ի պայքար՝
Յաղթանակաց պըսակ ի գլուխ բոլորէին գերափառ,
Եւ մեծաչուք տիրեալ փառօք աշխարհակալ աթոռոց՝
Յորոտընդոստ խօչիւն զինուց զերկիր սարսեն ի խորոց,
Եւ որ հըզօր երբեմն ի ձեռըս ունէին գաւազան՝
Աճիւնացեալ են արդ ի հող ի սեաւ մահուն ի կայան.
Անդ կայծակունք չիջեալ ոչ եւս ճայթեն ի դաշտ ռազմարար,
Արքունական թագք ի փոշի անկեալ ըղնին վայրապար,
Եւ պերճ համբաւ նոցին, աւա՛ղ, ծածկեալ է մութ ի գիշեր.
Ոչ ոք տըխուր գայ արտասուս ձօնել չիրմացն ի նըւէր.
Եւ Հայաստան անփառունակ, թափուր յորդւոց քաջազանց,
Անկարեկիր կայ ի տեսիլն, եւ ըզնօքօք առնէ զանց։

---

վարսագեղ ծառերուն տերեւները մեղմ մրմունջով մը կը շարժէ. համատարած խոր լռութիւն մը եւ անեղ ու նսեմ մթութիւն մը կը տիրեն այն վսեմ տեղը՝ տխուր միայնութեան մը մէջ. եւ հոյակապ պերճ մահարձանները, մեծասքանչ շիրիմներու կոթողներ, հոս ու հոն ցիրուցան՝ կիսականգուն կը կենան վեհապանծ տեսքով մը. հոն, մեր դիւցազները որ ատենով քաջութեան հանդիսավայրին մէջ՝ անեղասաստ կռիւով գուպարայաղթ ասպարէզ կազմած, գոռ հերոսներ՝ թագաւորներու հետ անեղ պայքարի մտած, յաղթանակի պսակը գլուխնին կը բոլորէին գերափառ, եւ մեծաչուք փառքով տիրելով աշխարհակալ աթոռներու, զէնքերու որոտընդոստ խօչիւնովը երկիրը հիմէն կը սարսէին, եւ որոնք երբեմն իրենց ձեռքին մէջ հզօր մական մ'ունէին, հիմա հողին տակ, մահուան սեւ կայանին մէջ աճիւնացած են. հոն՝ կայծակները մարած, այլ եւս չեն ճայթիր ռազմական դաշտին վրայ. արքունական թագերը փոշիի մէջ ինկած կը պառկին, ու անոնց պերճ համբաւը, աւա՛ղ, մութ գիշերի մէջ ծածկուած է. ոչ ոք կուգայ այն շիրիմներուն տխուր արցունք մը նուիրել. եւ Հայաստան, անփառունակ, իր քաջազն որդիներէն զրկուած, անկարեկիր կը մնայ այդ տեսարանին, եւ անփոյթ։

Այլ մենաւոր անդր ի նոճիս Հայաստանեայց վեհ Ոգին՝
Թափառական շրջէր ի ճեմ, ի սուգ թաղծեալ տրտմագին,
Մերթ եւս նստեալ անդ ուր Երասխ թափէ պղտոր զիւր ալիս,
Ձեռն ի ծընօտ՝ եղերական հեղոյր արտօսր եւ լալիս,
Եւ զնախկին փառըս Թորգոմայ բերեալ աչացն յանդիման՝
Զաշխարհաւեր արդ ըզկորուստն ողբայր նորա անդարման.
Մերթ յանտառին չիրմացն հանդէպ նըստէր թաղծեալ եւ տըխուր,
Աղիողորմ ի ձայն ողբոց հընչէր ողջոյն տեղին լուռ.
« Աւա՛ղ, գոչէր, կենդանարար կորոյս երկիրն իմ զարեւ,
Եւ սեւամաղձ մըթին խաւար պատեաց զնովաւ մշտատեւ.
Ա՛հ, դու, Արա՛մ, ընդ ծանրակիր հեծես շըղթայս անմըռունչ.
Ո՞ր ձեռն անգութ ի քում գլխոյ զշըքեղ զարդուց կապտեաց փունջ.
Ըզգեղանի քոյ զայդ դիտակ եւ զայն երես վայելուչ՝
Ցարիւնացայտ կայլակ վիժեալ արդ տեսանեմ թաթաւուչ.
Ողբամ ըզքեզ, Հայո՛ց աշխարհ, ըզքեզ ողբամ դառն ի կոծ.
Վա՜յ եւ կղո՛ւկ քեզ եղկելույդ, աւա՜ղ փառացդ անցելոց.
Ո՞ւր թագաւորք քո վեհափառ գեղապաճոյճ ի հանդէս,
Եւ քաջազանց վաշտից փաղանգ վառեալ փառաց յասպարէզ.
Աստէն զոռող Նեբրովդըն Բէլ դիաթաւալ ի յերկիր,

---

Բայց այդ նոճիներուն մէջ, մինաւորիկ, Հայաստանի վեհ Ոգին թափառական կը շրջէր, թաղծագին սուգի մէջ ընկղմած. մերթ ալ, նստած հոն ուր Երասխը իր պղտոր ալիքները կը թափէ, ձեռքը ծնօտին, եղերական արցունքներ կը հոսեցնէր, ու Թորգոմի նախկին փառքը աչքին առջեւ բերելով՝ անոր այժմեան աշխարհաւեր անդարման կորուստը կ'ողբար. մերթ, անտառին չիրիմներուն դիմացը կը նստէր տրտում տխուր, եւ իր աղիողորմ ողբերուն ձայնէն այդ ամբողջ լուռ տեղը կը հնչէր.

« Աւա՜ղ, կը գոչէր, իմ երկիրս կորսնցուց իր կենդանարար արեւը, եւ սեւամաղձ մութ խաւար մը զանի պատեց մշտապէս. Ա՛հ, դո՛ւն, Արա՛մ, ծանրակիր շղթաներու տակ կը հեծես անմռունչ. ո՞ր անգութ ձեռքը քու գլխէդ շքեղ զարդերուն փունջը կապտեց. քու աղուոր մազերդ ու վայելուչ երեսդ այժմ արիւնի կայլակներու մէջ թինկած թաթխուած կը տեսնեմ. Կ'ողբամ քեզ, Հայոց աշխա՛րհ, քեզ կ'ողբամ դառն կոծով. վա՜յ ու ափսո՜ս քեզի, ո՜վ թշուառ, աւա՜ղ անցած փառքերուդ. ո՞ւր են գեղապաճոյճ հանդէսներու մէջ երեւցող քու վեհափառ թագաւորներդ, եւ քաջերու վաշտերուն փաղանգը փառքի աս-

Ի լայնալիճ աղեղանէ անկաւ Հայկայ գըրկալեր·
Քաջակորովն անդէն Արամ, զոռ ի մարտի նահատակ,
Ըզժանտաժուտ Նիւքար ի յօդ տայ աշխարհի նըշաւակ·
Դիւցանըմանն ահա Տիգրան զոռայ ի մարտ դըժընդակ,
Ի ճապաղիս յարեան վըտակ դընէ ի լիւղ զԱժդահակ·
Առաքինին սաստ Վաղարշակ՝ օրէնըսդիր զերիմաստ՝
Ըզցանկալին զիւր Հայաստան փութայր գործել բարեբաստ.
Մեծն Արտաշէս սպառազինօք ծածկեալ զերկիր պատ ի պատ՝
Տիեզերաց ընդդէմ ահեղ վառեալ կազմի ի ճակատ·
Աշխարհ համայն երկիւղաբեկ դէտակն ի նա հիքաբար՝
Ոչ խիզախէ ընդդիմամարտ բերել նըմա ի պայքար·
Տիգրան զոռոզ յաղթող զինուք չանիթս արձակէ ի յերկիր,
Անեղախըրոխտ սէգ Թըշնամւոյն փառքըն դարձան ի մոխիր·
Աբգար ըզգօնն իւր Տէրունւոյն վառեալ ի սէր խանդակաթ,
Ըզհաւատոյ կապեաց ի գլուխ գեղապարոյր ըզպըսակ·
Աստ Տըրդատէս հըսկայազօր երագաթեւ ի յընթաց
Կոխէր զազինս, 'ւ ի քայլ ոտին դողայր երկիր ի հիմանց,
Ի կռիւ ապա վառեալ զինու Խաչին ընդդէմ անդընդոց՝
Ջարադիւթից դիւացն ըզխումբ հոսեաց ի վիհ դըժոխոց·

---

պարէզին մէջ զինավառ· այստեղ զօրող Նեբրովդ Բէլը Հայկայ գրկալիր լայնալիճ աղեղէն դիաթաւալ գետինը ինկաւ· անդին· քաջակորով Արամը, պատերազմի մէջ զօռ դիւցազն, ժանտաժուտ Նիւքարը օդին մէջ կը կախէ՝ բովանդակ աշխարհի առջեւ խայտառակելով զայն· ահա դիւցանման Տիգրա՛նը, դժնդակ մարտին մէջ կը զօռայ, արիւնի վտակի մը մէջ Աժդահակը կը լողցնէ· ասդին, առաքինի Վաղարշակը, օրէնսդիր զերիմաստ, իր ցանկալի Հայաստանը բարեբաստիկ դարձնել կը փութար· Մեծն Արտաշէս սպառազինութեամբ բովանդակ երկիրը ծածկելով, տիեզերքի դէմ ահեղ ճակատամարտ մը կը կազմէ· ամբողջ աշխարհը, սարսափահար, աչքը ողորմուկ անոր յառած, չի համարձակիր անոր դէմ պայքարի ելլել· Զօռող Տիգրանն իր յաղթական զէնքերովն երկրի վրայ չանիթեր կ'արձակէ, անեղախրոխտ սէգ թշնամիին փառքը մոխիր կը դարձնէ· զգօն Աբգարը, իր տիրոջը խանդակաթ սիրովը վառած, հաւատքի գեղապարոյր պսակն իր գլուխը կապեց· հոս, Տրդատը հսկայազօր, երագաթեւ ընթացքով, ազգեր կը կոխոտէր, ու իր քայլերուն տակ երկիրը հիմերէն կը դողար, յետոյ Խաչին զէնքովն ամրացած՝ անդունդին դէմ կռուի ելլե-

Քա՛ջըդ Վարդան, պըսակաւոր առաքինի՛դ Նահատակ,
Դիւամոլից զաշխարհդ ընդդէմ դու կազմեցեր ի բանակ.
Խաւարաբորբ Սանդարամետք հուր ժայթքեցին ի խորոց,
Այլ չիջուցեր բոսորաբուղխ արեամբդ ըզհրոյն կիզիչ բոց։
Զարթի՛ք աղէ՛, ո՛ Արամեան պերճ դիւցազունք քաջայաղթ,
Զարթի՛ք, տեսէ՛ք զաւաղելին ըզԹորգոմայ նըկուն բաղդ.
Շիջաւ նորա աստղըն փառաց՝ որ լուսափայլ շողշողէր,
Եւ արդ յողորմ նըստի ի սուգ նըսեմաստուեր ի գիշեր.
Այն որ պճնէր վայելչագեղ երբեմն ի չուք իւր յաւէժ՝
Մերկ եւ Թափուր անդընդախոր անկաւ ի վիհ գահավէժ,
Եւ որ երբեմն՝ իշխան գոռոզ՝ մեծափարթամ ճոխանայր,
Ի մեծաչուք կապտեալ փառաց արդ կայ տընանկ ապիկար.
Աւա՛ղ նըմա, ըղցանկալին լըքեալ զերկիր հայրենի,
Կեայ խուժդուժից ի մէջ ազգաց, ի տար աշխարհ վայրենի.
Վա՜հ եղկելոյն, որ հայրենեաց մերկ կենսաձիր յարեւէն,
Թափառական ընդ անծանօթ շրջի գաւառ տարադէմ.
Աղէ՛, զարթի՛ք... այլ, ո՛հ, նոքա ըզնին ի հող մահակիր,
Եւ Հայաստան, անյիշատակ, նընջէ ի քուն անյարիր...»

---

լով, չարադիւթ դեւերու խումբը դժոխքի վիհը գլորեց. դուն, քա՛ջ Վարդան, պսակաւոր առաքինի նահատակ, դիւամոլներուն դէմ քու աշխարհդ բանակի վերածեցիր. խաւարաբորբ Սանդարամետը իր խորքերէն հուր ժայթքեց, բայց քու բոսորաբուխ արիւնովդ այդ կիզիչ բոցը մարեցիր. օ՜ն, արթնցէք, ո՛վ Արամեան պերճ դիւցազներ քաջայաղթ, արթնցէ՛ք, տեսէ՛ք աւաղելի Թորգոմի նկուն բաղդը. մարեցաւ անոր փառքին աստղը որ լուսափայլ կը շողշողէր, եւ այժմ ողորմուկ սգաւոր նստած է՝ նսեմաստուեր գիշերի մէջ. այն որ երբեմն վայելչագեղ իր չքեղութեամբը կը պճնուէր. մերկ եւ Թափուր՝ անդնդախոր վիհի մը մէջ գահավիժեցաւ. այն որ երբեմն, գոռոզ իշխան, մեծափարթամ կը սիգար, իր մեծաչուք փառքէն կապտուած՝ տնանկ է այժմ ու տկար ափսո՜ս անոր, որ ցանկալի հայրենի երկիրը լքած, խուժդուժ ազգերու հետ կ'ապրի, վայրենի օտար աշխարհներու մէջ. վա՜յ Թշուառին, որ հայրենական կենսաձիր արեւէն զրկուած, անծանօթ տարադէմ գաւառներու մէջ Թափառական կը շրջի. ելէ՛ք, արթնցէ՛ք, բայց, ա՜խ, անոնք մահակիր հողին մէջ պառկած կը մնան. եւ Հայաստան, անյիշատակ, անյարիր քունով մը կը քնանայ...»։

*Այսպէս Ոգին ի լուռ անտառն հանապազորդ էր սովոր՝*
*Աշխարելի ի ձայն ողորմ եղերերգել մենաւոր,*
*Մերթ այս մերթ այն շիրմին վերայ ձօնեալ աղի արտասուս,*
*Ընդաղելի գլուխն ի կախ ճեմէր ի վայրըն անլոյս.*
*Այլ մինչ անդ սա հայէր տըխուր աչօքն յուսով ինչ բարեաց՝*
*Տացէ՞ արդեօք լոյս կենսատիր յածխնացեալ ոսկերաց,*
*Մինչ արփենին վեհ Մխիթար ծագեաց յերկիր լուսազեղ,*
*Խնդաց Ոգին, եւ բերկրաձայն երգեաց ըզնա ի գեղգեղ.*
*Ետես զորդիս նորա՝ զաստեղս պայծառափայլ ի ճաճանչ,*
*Ծագեալ յաշխարհըն Թորգոմայ զըւարթ ի լոյս գեղապանծ.*
*Այլ աստ մինչդեռ շողն արփաւոր խաւարեցաւ արեւուն՝*
*Ըզտըխրականն արկաւ զանձամբ ըզմութ հանդերձ սեւագոյն.*
*Ողբաց ըզնա, ողբաց ցաւով զազգն ի հօրէն անտէրունչ,*
*Լընոյր լալեօք զանտառն ողջոյն հանապազորդ ի մըրմունջ։*

*Այլ ո՜հ, ո՞ւստի քաղցրանուագ հընչեն քընարք օրհնաբան.*
*Ո՞ւր բազմամբոխ ժողովրդոց պարըն դիմէ բերկրական.*
*Ահա տաճարն աստուածաբնակ պըճնեալ ի զարդ գեղապանծ,*
*Փայլեն աստեղք անդ լուսալիր պայծառագեղ ի ցոլմանց.*

---

*Այսպէս Ոգին լուռ անտառին մէջ սովոր էր ամէն օր աշխարաւոր ողորմ ձայնով եղերերգել մենաւոր. մերթ այս մերթ այն շիրմին վրայ աղի արցունք ձօնելով, նաղելի գլուխը կախած՝ անլոյս վայրին մէջ կը ճեմէր. բայց մինչ հոս հոն կը նայէր տխուր աչքերովը՝ բարիք մը յուսալով, թէ արդեօք ածխնացած ոսկորներէն կենսատիր լոյս մը կը ծագի՞. եւ ահա արեւանման վեհ Մխիթարը երկրի վրայ ծագեցաւ լուսազեղ. ուրախացաւ Ոգին, եւ բերկրաձայն գեղգեղով զայն երգեց. տեսաւ անոր որդիները, պայծառափայլ ճաճանչով աստղեր, Թորգոմայ աշխարհին վրայ զուարթ գեղապանծ լոյսով մը ծագած. բայց հոս, մինչդեռ խաւարեցաւ արեւուն շողը, տխրական սեւագոյն մութ հանդերձով մը ծածկուեցաւ, ողբաց զայն, ցաւով ողբաց հօրմէն որբացած անտէրունչ ազգը, եւ բովանդակ անտառն իր լացին մրմունջովն ամէն օր կը լեցնէր։ Բայց, ո՜հ, ուսկից յանկարծ քաղցրանուագ քնարներ կը հնչեն օրհնաբան. ո՞ւր կը դիմէ բերկրութեամբ բազմամբոխ պարը ժողովուրդներուն. ահա՛ աստուածաբնակ տաճարը գեղապանծ զարդերով պճնուած. լուսալիր աստղեր հոն կը փայլին պայծառագեղ ցոլմունքներով. քահանաներու լուսերամ դասը, չուրջը*

Քահանայից դաս լուսերամ շուրջ պար առեալ երգեցին՝
Ըզմեծաշուք հանդէս վեհին կազմեն ի կարգ գեղեցիկ.
Եկըն, տես՛ք, մուտ ի փառս իւր առաքինին հանճարեղ՝
Հեղահամբոյր ի կերպարան եւ ի տեսիլ փառաւեղ.
Ցասուածարեալ կալեալ ձեռին ըզշնորհազարդ գաւազան,
Ի քայլ վըսեմ եւ մեղմընթաց մատեաւ ի բեմ սրբազան,
Եդեալ ի գլուխն է ի խոհական գեղապաճոյճ վեհ ըզթագ,
Եւ յօրինեալ պըսակաւոր՝ որպէս յաղթող նահատակ.
Ի նոյն եւ փողք, վին եւ տաւիղ դաշնակաւոր յերգ ամբաւ՝
Հընչեն զանուն նորա չքնաղ եւ հըռչակեն ի յամբաւ.
«Կեցցե՛ս, գոչեն միաբարբառ ազգ եւ ազինք համօրէն,
Կեցցե՛ս յաւէժ, եւ մեծամեծ ընկալ պարգեւս ի հօրէն.
Վառաբախտիկ կացցես Հայկայ ակընկալիք մեծայոյս.
Մատաղերամ եւ իւր որդւոց լիցիս ի մեծ ի խրախոյս»։
Զայս բերկրանաց լըւաւ նըւագ Ոգին, անուէն եւ յարեաւ.
Ցառաքինին ակնկառոյց՝ առ՝ «Եկի՛ր դու. բարեաւ.
Ինձ զուարթարար քո է գալուստ, պըսա՛կ փառաց Թորգոմայ.
Քանի՛ արդեօք խինդ բերկրալիր ո՛հ յաւելցես դու նըմա»։
Որպէս յորժամ զորովաղէտ մայր կողկողեալ ի Թախանձ,

---

պար բռնած երգելով, վեհին մեծաշուք հանդէսը գեղեցիկ կարգով կը կազմեն. տեսէ՛ք, եկաւ իր փառքին մէջ մտաւ հանճարեղ առաքինին, հեղահամբոյր կերպարանքով ու փառաւեղ տեսքով, աստուածարեալ ձեռքին մէջ շնորհազարդ գաւազանը բռնած, վսեմ ու մեղմընթաց քայլով սրբազան բեմին մօտեցաւ. խոհական գլխուն վրայ գեղապաճոյճ վեհ թագը դնելով, պսակաւոր կանգնեցաւ՝ ինչպէս յաղթող դիւցազն մը. եւ նոյն փողերը, վինն ու տաւիղը դաշնակաւոր ամբաւ երգով մը անոր չքնաղ անունը կը հնչեցնեն ու կը համբաւեն. «Ապրի՛ս», կը գոչեն միաբարբառ բոլոր ազգերը, «յաւիտեան ապրէ՛ս, եւ ընդունէ՛ Հօրմէն մեծամեծ պարգեւներ. բարեբախտ Հայկին մեծայոյս ակնկալի՛քը եւ անոր մատաղերամ որդիներուն խրախոյսը պիտի ըլլաս դուն»։

Այս բերկրանքի նուագը լսեց Ոգին, ու իսկոյն ոտքի կանգնեցաւ, առաքինւոյն ակնկառոյց ըսաւ անոր. «Բարով եկար, ինծի զուարթարար է քու գալուստդ, ո՛վ Թորգոմայ փառքին պսակ. ո՛րքան արդեօք բերկրալիր խինդ պիտի աւելցնես դուն անոր»։ Ինչպէս երբ զորովաղէտ մայրը, Թախանձագին կողկողելով, մարդախանձ գայլին

Ողբայ զորդեակն իւր ի ժանիս ծախեալ գայլոյ մարդախանձ,
Ցանկարծ նըմա թէ աւետեաց ձայն հնչեսցէ խընդական,
Եւ ըղմատաղն իւր ըղմանուկ տեսցէ աչացն յանդիման՝
Հըրճուեալ յոգին բերկրապատար մերժէ ըղկոծ մահաբեր,
Եւ մոռացօնք լինին նըմա ցաւքըն տաղտուկ վըշտըմբեր,
Այսպէս Ոգին՝ վեհին ի տես, եւ չուք անմահ ճակատուն
Փայլեաց գեղով իբրու զպարզել ի Թուխ ամպոց արփենւոյն.
Անդէն ի թաւ փայլակնացայտ լոյս ծագեցաւ յանտառին,
Եւ բարեբաստ Յոյս ի յերկնից էջ ի յաշխարհ ստորին.
Ի նոյն եւ վեհն ձայնեաց. «Տեղի՛ տուք, հեռ, նախանձ վայրենիք,
Իսկ դու յաւէ՛րժ կեցցես, այո՛, ո՛ իմ չքնաղ հայրենիք.
Կենդանարար ցօրչափ գայեր չընչեմ կենաց քաղցրաշունչ՝
Ա՛հ, մի՛ երբեք վատաբախտիկ լըքեալ Թողցիս անտէրունչ.
Քեզ զայս ուրեմն երդումն անսուտ յինէն ընկա՛լ ի նըւէր։»
Ասաց, եւ յոյժ զորովեցան աղիքն ազգին առ ի սէր.
Զայս բան վեհին, ո՛ քաղցրաշունչ տարէ՛ք զեփիւռք առ Ոգին
Եւ կարեւէր ի սիրտ նորա ցօղ տեղացէ զովադին.
Զայս ի գեղգեղ յեղանակել առէ՛ք, Թռչո՛ւնք բազմերանգ.
Աւետաւոր զայս բան յաւերժ Թող հնչեսցէ արձագանք։

---

ժանիքներուն մէջ անչնչացած իր որդեակը կ'ողբայ, եթէ յանկարծ անոր ականջին աւետիսի ուրախ ձայն մը հնչէ եւ իր մատաղ մանուկը աչքին դիմացը տեսնէ, հոգին բերկրապատար հրճուանքով լեցուած մահաբեր կոծը կը վանէ եւ ցաւերն ու վշտըմբեր տաղտուկը կը մոռնայ, այնպէս Ոգին, տեսնելով վեհը, անմահ ճակտին չուքը գեղեցկութեամբ փայլեցաւ՝ ինչպէս արեւը որ Թուխ ամպերէն կը մերկանայ. իսկոյն թաւ անտառին մէջ փայլակնացայտ լոյս մը ծագեցաւ, եւ բարեբաստ Յոյսը երկինքէն աշխարհի վրայ իջաւ. այն ատեն վեհն ալ ձայնեց. «Հեռու գացէ՛ք, ո՛վ վայրենի ատելութիւն ու նախանձ. իսկ դուն յաւիտեան ապրի՛ս, ո՛վ իմ չքնաղ հայրենիքս. որքան ատեն կեանքի քաղցրաշունչ կենդանարար օդը շնչեմ, դուն երբեք տարաբախտ ու անտէրունչ լքուած պիտի չմնաս. այս անսուտ երդումն ինձմէ նուէր ընդունէ՛ ուրեմն։»

Ըսաւ, ու ազգին սիրովը աղիքը սաստիկ գորովեցաւ։ Վեհին այս խօսքերը, ո՛վ քաղցրաշունչ զեփիւռներ, տարէք Ոգիին, եւ Թող անոր կարեւէր սրտին վրայ զովացին ցօղ մը տեղայ. բազմերանգ Թռչուններ, այս խօսքերը գեղգեղելով եղանակեցէ՛ք. արձագանքը Թող

Ի Թինդ ոտին գեղապարեալ ձայն ետ Ոգին ցնծութեան.
«Ի մահառիթ թըմբրութենէն զարթի՛ր ի լոյս, Հայաստա՛ն.
Քեզ երանիս այսուհետեւ մեծաբարբառ փողեմ արդ,
Ե՛լ ընդ առաջ, աղէ՛, վեհին՝ պճնեալ ի շուք գեղազարդ.
Դա մեզ անշուշտ չքնաղ պարգեւ ընծայեցաւ երկնառաք.
Անմահ ի գլուխ առաքինւոյն բոլորեսցո՛ւք պերճ պըսակ.
Քեզ անձկայրեաց, վեհա՛զըն դու, սիրտ իմ մընայր բազմատենչ.
Բիւր նըւագաց օրհներգութիւնք յաճախեսցեն առ ի մէնջ.
Դու զարտասուաց կայլակահոս սըրբեցեր զտխուն ապաժոյժ.
Արամազնեայց ի մութ սրտէն ցաւք մերժեցան մահագոյժ.
Հայաստանեայց երկնաբընա՛կք, եւ դուք, հովի՛ւք լուսաճեմք,
Իջէ՛ք ի տես այս վեհազին անմահ յերկնից ի գահէն.
Դա սըրբափայլ վարուց ձերոց բերէ յանձին ըզտիպար»։
Լըւան անմահքն, եւ ի յերկիր իջին թեթեւ զարշապար,
Փայլակնաշող լոյս սփռեցաւ, ըզվայրն ելից գեղապանծ,
Եւ ոսկեթոյր ամպք ծալ ի ծալ ծածանեցան ի բարձանց.
Հայրըն բարձրեալ յՈղիւմպոսէն որոտընդոստ հուր տեղաց.
Զուարթունք անդ չորք լուսապարփակ փայլին նըման աստեղաց.
Մեծըն Գրիգոր, Ներսէս, Սահակ, ոսկի մական ի ձեռին,
Սեբաստիոյ ծընունդըն պերճ՝ անդ Մըխիթար քաջարին,

---

յաւիտեան այս աւետաւոր բառերն հնչեցնէ: Ոտնաթինգ գեղապարելով Ոգին ցնծագին ձայն արձակեց, «Մահառիթ թմրութենէդ ի լոյս արթընցիր, Հայաստա՛ն. այսուհետեւ քեզ երանի՛ մեծաբարբառ կը փողեմ հիմա. գեղազարդ չքեղութեամբ պճնուած՝ ելի՛ր վեհին ընդ առաջ. անշուշտ ան մեզի երկնքէն իբր չքնաղ պարգեւ մը ղրկուեցաւ. առաքինւոյն անմահ գլխուն պերճ պսակ մը բոլորենք. ո՛վ վեհազն, սիրտս բազմատենչ կարօտով [illegible] կը սպասէր. բիւրաւոր օրհնութեանց նուագներ պիտի բարձրանան յաճախ մեզմէ. դուն կայլակահոս ալիք-ներու ապաժոյժ աղբիւրը չորցուցիր. Արամի որդւոց մութ սրտէն մահագոյժ ցաւերը հեռացան. Հայաստանի երկնաբնա՛կ հոգիներ, եւ դուք, ո՛վ լուսաճեմ հովիւներ, ի տես այս վեհազնին՝ երկնքի անմահ գահէն վար իջէք. ասի ձեր սրբափայլ բարքին տիպարն իր անձին վրայ կը կրէ»: Անմահները լսեցին, ու թեթեւ զարշապարով մը երկրի վրայ իջան. փայլակնաշող լոյս մը սփռեցաւ. վայրը լեցուց գեղապանծ, եւ ոսկեթոյր ամպեր ծալ ի ծալ ծածանեցան բարձունքներէն. բարձրեալ Հայրը Ողիմպոսէն որոտընդոստ հուր տեղաց. հոն չորս հրեշտակներ լուսապարփակ աստղերու նման կը փայլին. Մեծն Գրիգոր,

Ի մեծայաղթ կալեալ յաջոյն ըղջանըն մեծ լուսավառ՝
Որով ի մէնջ զանդիտութեան մերժեաց զանեղն ըղխաւար․
Փակ ըզնոքօք քաղմագունին ոսկեկամար ծիածան
Ցօղ պարզեցաւ լուսացընցուղ երկնահանդէտն ի կայան․
Նըման յորժամ գեղանըշոյլ շողք լուսափիւռ արփենւոյն
Կապուտագեղ շանթեն յալիս խաղաղանիստ ովկեանուն,
Զւփիւռ քաղցրիկ շուրջ թեւածէ, լուռ են այերք եւ անդոյր,
Անդ վէտ ի վէտ գեղապարեալ շողան ալիքն ոսկեթոյր՝
Այնպէս շողայր յօդըն տարած եւ տիպ վեհիցն հոգեղէն,
Եւ ճաճանչեղ յամպոյ միջի ցոլմունք ցայտեն բոցեղէն․
Քայլեն նոքա հանդարտահետ, լոյս յառաջոյ փայլակէր,
Որպէս թըռչնոց հոյլք տարմաբար թռուցեալք թեթեւ ընդ այեր․
Այն ինչ մինչդեռ ղառաջինեին ի յակն արկեին յանդիման,
Սիրտք խայտացին հոգեզօրով վեհիցն ի խինդ անպայման․
Ժըպիտ ծաղու քաղցրահամբոյր նոցուն ի դէմըս փայլեաց,
Եւ շողշողեաց վայելչագեղ գոյն կարմրերփեան երեսաց․
Վեհք ընդ վեհին ոգեխառնին խանդաղակաթ ի գորով,
Զեղուն անձինք նոցին մաքուր՝ անմահական սերտ սիրով․
Եւ անդ համբուն լեալ ցընծագգեաց հաւատոյ հայրըն Գրիգոր՝

---

Ներսէս, Սահակ, ոսկի մականը ձեռքերնին, Սեբաստիոյ պերճ ծնունդ՝ արի Մխիթարը. մեծայաղթ աջին մէջ լուսավառ ջահը բռնած, որով մեր մէջէն տգիտութեան անեղ խաւարը վանեց. զանոնք պարփակող բազմագոյն ոսկեկամար ծիածանը օդին մէջ լուսացնցուղ պարզուեցաւ երկնահանգէտ կայանին մէջ․ ինչպէս երբ լուսափիւռ արեւուն գեղանշոյլ շողերը խաղաղանիստ ովկիանոսին կապուտագեղ ալիքներուն մէջ կը շանթեն, քաղցրիկ [illegible]իւռ մը չորս կողմը կը թեւածէ, լուռ է օդն ու հանդարտ, ու հոն [illegible] է վէտ գեղապարելով ոսկեթոյր ալիքները կը շողան, այնպէս կը շողար օդին մէջ տարածուած՝ հոգեղէն դէմքն ալ վեհերուն, եւ ճաճանչաւոր ամպին մէջէն բոցեղէն ցոլմունքներ կը ցայտէին․ անոնք հանդարտ կը քալէին, ու լոյսն անոնց առջեւէն կը փայլակէր, ինչպէս թռչուններու հոյլեր որ այերին մէջ թեթեւ տարմաբար կը թռչին․ եւ երբ առաջինուոյն մօտն եկան ու երեսը նայեցան, վեհերուն սիրտը խայտաց հոգեզօրով անպայման ուրախութեամբ․ քաղցրահամբոյր ժպիտ մը անոնց դէմքին վրայ փայլեցաւ, եւ երեսնուն կարմրութեան գոյնը վայելչագեղ շողշողաց․ վեհերը վեհին հետ կ՚ոգեխառնուին խանդաղակաթ

Արժանագով ի Ներբողեան շարժեաց շրթունս երկնաւոր. ՝
« Ողջո՜յն, վեհա՛դդ շնորհափայլ, չքնա՛ղ պարգեւ երկնածի՛ր՝
Խաւարարգել Հայաստանեայց ծագել արփի լուսալիր.
Առ քեզ տարփմամբ ցընծայ հոգիս, երանութեան դու աղբի՛ւր,
Համբաւդ ի լուր տիեզերաց տարածեսցի համասփիւռ,
Շուք պարծանաց զարմին Հայկայ դոյ եւ պըսակ գեղապանծ,
Շուք եւ կրօնիցն աստուածաւանդ՝ զիմոյս բերեալ ընծախանձ.
Ըզհաւատոյ վառեալ յինէն լոյսն յաշխարհի բերկրատար՝
Քեզ ի Նըշոյլ ճաճանչաւէտ բորբոքեսցի վառ ի վառ.
Քեզ աջ Տեառն ամենազօր հովանասցի ի բարձանց,
Տարտարոսին դղորդեալ անդունդք սասանեսցին ի հիմանց »։
Զայս լուսազգեաց Մեծն Հայրապետ մաղթեաց վեհին բարեփառ,
Իսկ եւ Ներսէս, ժիր նահատակ, զայս հրճուանաց ետ բարբառ.
« Ողջո՜յն վեհիդ, շնորհաց հոգւոյն վայելչազարդ յօրինուա՛ծ,
Պայծառազեղ դու Թորգոմայ ճառագայթեալ լո՛յս փառաց,
Որ աղեկէզ ի հեծութիւն վիրաւորեալ ի հոգի,
Եւ քրձազգեաց դընէր անկեալ հողաթաւալ ի փոշի՝
Ի քեզ միայն ակընկառոյց վերամբառնայ ըզգըլուխ,
Եւ զապաժոյժ սրբէ յաչաց ըզգերարտօսր յորդաբուխ.

---

զորովով, անոնց մաքուր անձերը անմահական սերտ սիրով կը զեղուն, եւ հոն՝ համակ ցնծութեամբ լեցուած, հաւատքին հայրը՝ Գրիգոր, արժանադով Ներբող մ'արտասանելու համար երկնաւոր շրթները շարժեց.

«Ողջո՜յն, վեհա՛դ շնորհափայլ, չքնաղ պարգեւ երկնածիր, որ Հայաստանի վրայ կը ծագեցնես խաւարարգել լուսալիր արեւ մը, քեզմով հոգիս տարփագին կը ցնծայ, ո՛վ երանութեանց աղբիւր, համբաւդ բովանդակ տիեզերքին ի լուր՝ համասփիւռ պիտի տարածուի. Հայկայ զարմին շքեղ պարծանքն ու գեղապանծ պսակը պիտի ըլլաս դուն, պարծանքն ալ աստուածաւանդ կրօնքին՝ իմինիս նախանձախնդիր. հաւատքի լոյսը զոր ես վառեցի աշխարհիս բերկրութիւն բերելու համար, քու շնորհիւդ ճաճանչաւէտ նշոյլով պիտի բորբոքի վառ ի վառ. Տիրոջ աջը վերէն քու վրադ պիտի հովանանայ, Տարտարոսին անդունդը՝ դղրդուած՝ հիմունքէն պիտի սասանի»։

Լուսազգեաց մեծ հայրապետը զայս մաղթեց բարեփառ վեհին. իսկ Ներսէսն ալ, ժիր կտրիճ, հրճուանքի սա խօսքերն ըսաւ.

« Ողջո՜յն վեհիդ, Հոգւոյն շնորհներովը վայելչազարդ յօրինուած,

Վերածնանի Նորափետուր, զի մահացեալ յոյս նորա,
Վերածնանին եւ հայրենիք աւերակացն ի վերայ.
Տեսցէ նա զքեզ ընդդիմազէն հանդիպացեալ ախոյեան,
Զաղխաքեր մերժել չարիս ակնարկելովըդ միայն,
Ցանդորր ըզնա յանկուցանել վաստակաբեկ ի հոգի՝
Զաջ քոյ հըզօր լայնատարած կարգեալ նըմա հովանի.
Եւ թօթափեալ ըղթախծութիւն յանձնէ, զաճիւն եւ ըզքուրձ,
Զայն ցնծութեան բերկրապատար տացէ ազանցըն հանուրց.
Առաքինւոյդ յո՛յց երանեաց, իսկ ես հիւսեմ քեզ պըսակ: »
Բարբառեցաւ աստուածարեալ Պարթեւազունըն Սահակ.
« Քեւ խըրթնացեալ վայելչութիւն պայծառասցի Թորգոմայ,
Մատաղերամ հոյլք մանկըտեաց ըզլոյս տեսցեն գերակայ.
Զի դու եղծեալ ըզխաւարն ուր կան ի մութ անհեղ եւ նըսեմ՝
Իմաստութեան ծաղկափըթիթ ածցես յուղին լուսաճեմ,
Եւ ի նորայն բարձրագիտակ լուսաճաճանչն ի տաճար.
Շոյտ սաւառնեալ թեւապարիկք դադարեսցեն ի կատար.
Անտի 'մաստից եւ հանճարոյ փայլատակեալ ճառագայթ,
Եւ յաններչոյլ երկիրն Հայկայ բոց վառեսցի հըրագայտ.
Ամպրոպայոյզ գնասցեն մըրրիկք եւ դառնաշունչ ձըմերունք»

---

դուն պայծառացեղ փառքի լոյս մը ճառագայթեցիր Թորգոմայ վրայ, որ վիրաւոր հոգւով, աղեկէզ հեծեծելով, քուրձ հագած փռուեր էր փոշիի մէջ հողաթաւալ. քեզի միայն ակնկառոյց, հիմա գլուխը վեր կը վերցնէ, ու աչքերէն յորդ վազող արցունքները կը սրբէ. Նորափետուր կը վերածնի անոր մեռած յոյսը. կը վերածնի նաեւ հայրենիքը՝ աւերակներուն մէջէն. ան պիտի տեսնէ որ՝ ընդդիմազէն ախոյեան հանդիպացած՝ մէկ նայուածքովդ միայն աղետաբար չարիքները պիտի վանես, անոր վաստակաբեկ հոգին խաղաղութեամբ յանկուցանելու համար՝ հզօր աջդ լայնատարած անոր հովանի ընելով. ու թաղծութիւնը եւ մոխիրն ու քուրձը իր անձէն մէկդի թօթափելով՝ ցնծութեան բերկրապատար ձայն մը պիտի արձակէ բոլոր ազգերուն.... իսկ ես քեզի պսակ կը հիւսեմ: »

Աստուածարեալ պարթեւազուն Սահակը սապէս խօսեցաւ.

« Քեզմով Թորգոմայ խրթնացած վայելչութիւնը պիտի պայծառանայ, մատաղ մանուկներու հոյլերը գերակայ լոյսը պիտի տեսնեն. վասն զի դուն, քանդելով խաւարը ուր մնացած են անհեղ ու նսեմ մութի մէջ, իմաստութեան ծաղկափթիթ լուսաճեմ ուղին պիտի տանիս զանոնք; եւ անոր բարձրաղիր լուսաճաճանչ տաճարին մէջ արագօրէն

Եւ փըթթեսցին անուշահոտ յարադըլեալ նոր զարունք․
Իմաստութեան վերընձիւղեալ նորաբողբոջ ծաղկանց փունջ,
Թըռչունք ի յոստս ըղձոյդ անուան առցեն երգոց ի մըմունջ»։
«Ո՜հ, յիս քանի՜ հոգեզըլեալ զեղուն հրճուանք խընդարար՝
Որդւոյս ի սէր իմ անձկալւոյ, որին գոչեաց Մըխիթար․
Ի նորատունկ բուսեալ դրախտէն տունկըդ մատաղ անեցուն,
Զի՞ գեղեցիկ յանկարծ ըղձլուխ բարձեր ի միրգ ակաղձուն․
Ցաւուր յորժամ պըտղակազարդ ցուցար փառօք յերեւան,
Եւ պարզեցեր ըղվեհ ճակատ ապշեալ ազանցն յանդիման,
Տօն խմբեցաւ հանդիսակիր առ խորանաւն աստեղեայ,
Եւ խընդակից ինձ երկնախումբ լուսերամից եղեն պարք․
Զի դու, որդեա՛կ իմ, ծագեցար տանըս իմոյ շըքեղ փառք։
Ո՛ն, ըղբաժակ արբեալ հոգւոյն՝ ե՛լ ի հանդէս նահատակ,
Քեզ ի զընին կացեալ յերկնից զաջ կարկառեմ օժանդակ․
Մի՛ բախտ դըժխեմ չարանախանձ կամ թէ աղէտք դըժընդակ
Քեզ ի դիմի արձանացեալ կայցեն ձեռինդ հակառակ․
Այլ աղջամուղջ տըգիտութեան եւ չարակնող խեռ նախանձ,
Ի թուխ գիշեր զարանամուտ՝ ժանիս սըրեալ գիշախանձ,
Ցանկարծ ի դուրս արշաւելով անհեղասաւիչ ի գալար՝

---

սաւառնելով թեւապար՝ կատարին վրայ պիտի թառին․ անկից՝ մըտածմանց ու հանճարի ճառագայթը փայլատակելով, Հայկայ անձնչոյլ երկրին մէջ հրացայտ բոց մը պիտի վառի․ ամպրոպայոյզ մըրրիկներն ու դառնաշունչ ձմեռները պիտի անհետանան, անուշահոտ ու յարադուրած նոր զարուններ պիտի փթթին, իմաստութիւնը նորաբողբոջ ծաղիկներու փունջեր պիտի վերընձիւղէ, թռչունները ոստերուն մէջ քու անուանդ պիտի հնչեցնեն իրենց երգերուն մըմունջովը»։

«Ո՜հ, ո՛րքան հոգեզուարթ ուրախաբեր հրճուանքներ կը զեղուն իմ մէջս, տեսնելով քեզ՝ անձնուէր որդիս, գոչեց արի Մխիթարը, նորատունկ դրախտէն բուսած ո՛վ մատաղ տունկ անեցուն, ի՞նչ գեղեցիկ յանկարծ գլուխդ կանգնեցիր՝ միրգերով բեռնաւոր․ այն օրը որ պտղազարդ երեւան եկար փառաւորապէս ու ապշած ազգերուն առջեւ վեհ ճակատդ պարզեցիր, աստեղազարդ խորանին մօտ հանդիսական տօն մը խմբուեցաւ, անմահ նուագածուներուն մատները տաւնաղեայ քնարը զարկին, եւ ինծի խնդակից եղաւ լուսեղէններուն երկնախումբ պարը․ վասն զի դուն, որդեա՛կս, ծագեցար՝ տանս շքեղ փառք․ օ՛ն, Հոգւոյն բաժակին ըմպելով՝ հրապարակ նետուէ՛, ո՛վ կտրիճ․ երկինքէն աչքս վրադ յառած, ձեռքս քեզի օգնութեան կ'երկնցնեմ,

Թոյն մահահոտ ամենասփիւռ ճարակեսցեն քոյդ յաշխարհ,
Եւ քեզ ընդդէմ նախանձաբեկ թէ յուզեսցին տարապարտ,
Արի՛, եւ դու, զիմաստութեան դի՛ր ի գլուխ սաղաւարտ,
Կա՛լ ի ձեռինդ զայս զիմ աւանդ, զգիտութեան ջահ լուսավառ,
Զտգիտութեան մերժել ի բաց զաշխարհակուլն ըզխաւար,
Սուր հանճարոյդ հըրաբորբոք փայլակնեցո՛ ըզսուսեր,
Անկցին ոսոխքըն դիմագրաւք, զոռ խիզախողքն ի վըռեր.
Ցերկնից յայնժամ հանդիսատես Բարձրեալըն ի քոյդ յաղթանակ,
Առատաձեռն պըսակ ի գլուխըդ կըռեսցէ մըցանակ.
Այն հովանի, աչք իւր անքուն լիցին հսկող պահապան՝
Մենարանիդ, Քեզ եւ Քոյոցդ մընալ յաւէժ անսասան—: »
Զայս ասացին, սաւառնաթեւ թըռեան յերկինս լուսաձեւ.
Եւ աւետիս բերկրեալ Ոգին սփռեաց 'յաշխարհ համօրէն:

---

որպէս զի չարանախանձ դժխեմ բախտը եւ կամ դժնդակ աղէտքները քու դէմդ արձանացած ձեռքերդ չհակառակին. բայց եթէ գիտութեան աղջամուղջին ու չարակնող խեռ նախանձը, մութ գիշերին մէջ գարանամուտ, գիշախանձ ժանիքը սրած՝ յանկարծ անհեզ դալարմամբ դուրս արշաւելով՝ քու աշխարհիդ մէջ մահահոտ թոյն մը ամենասփիւռ ճարակեն եւ եթէ քեզի դէմ անիրաւօրէն նախանձաբեկ յուզուին, եկո՛ր դուն ալ, իմաստութեան սաղաւարտը գլուխդ դի՛ր, ձեռքդ բռնէ իմ աւանդս. գիտութեան ջահը լուսավառ, եւ տգիտութեան աշխարհակուլ խաւարը հեռու վանէ՛. սուր հանճարիդ հրաբորբոք սուսերը փայլակնացո՛ւր դիմագրաւող ոսոխները, քեզի դէմ զոռ խիզախողները պիտի իյնան, եւ Բարձրեալը երկնքէն քու յաղթանակիդ հանդիսատես, առատաձեռն պսակ մը գլուխդ պիտի դնէ իբր մրցանակ. այն քեզի հովանի եւ անքուն աչքը պահապան ու հսկող պիտի ըլլան. որպէսզի Մենարանդ, Դուն ու քուկիններդ յաւիտեան մնաք անսասան: »

Այս ըսին, ու սաւառնաթեւ երկինք վերացան լուսաձեւ. ու բերկրութեամբ լեցուած, Ոգին աշխարհին մէկ ծայրէն միւսը աւետիս սփռեց:

Դ.

# Ի ՆԱՀԱՏԱԿՈՒԹԻՒՆ ՎԱՐԴԱՆԱՆՑ

## ԵՐԳ

Դըժոխք ի մարտ արշաւեն
Գոռ բանակաւ սեւագունդ.
Արի՛ք ընդդէմ քաջազէն
Վառեալք յասպար ի մըկունդ,
Թորգոմեան դիւցազո՛ւնք,
Նահատա՛կք աններկունք։
Ահա արիւն յարեաւ Վարդան
Դրոյթ ի դաշտ տալ փառաց.
Գուպարայաղթ քաջացն ի կռիւ
Որոտընդոստ ձայն գոռաց.
Վառեցարո՛ւք յասպարէզ
Հուր ըզգեցեալ բոցակէզ,
Թորգոմեան դիւցազո՛ւնք,
Նահատա՛կք աններկունք։
Ցարեաւ Աստուած ի յաթոռոյն
Ճշմարտութեան ախոյեան,
Եւ լուսաթռիչ Հաւատքըն սուրբ
Ճախրեաց Վեհին յանդիման։

---

## ՎԱՐԴԱՆԱՆՑ ՆԱՀԱՏԱԿՈՒԹԵԱՆ ՎՐԱՅ

## ԵՐԳ

Դժոխքը պատերազմի կ'արշաւէ սեւագունդ գոռ բանակով. դէմը ելէ՛ք քաջազէն, վահանով ու տէգով ամրացած, ո՛վ Թորգոմեան դիւցազներ, աննկուն կտրիճնե՛ր։

Ահա արի Վարդանը ելաւ, փառքի դաշտը ցատքեց, գուպարայաղթ կռուող քաջերուն որոտընդոստ ձայնով գոռաց.

« Ասպարէզը նետուեցէ՛ք, բոցակէզ հրակով զգեստաւորուած, ո՛վ Թորգոմեան դիւցազներ, աննկուն կտրիճներ։ »

Աստուած աթոռէն ոտքի ելաւ, ճշմարտութեան ախոյեան. եւ լուսաթռիչ սուրբ Հաւատքը Վեհին դիմացը ճախրեց։

Վառեցարո՛ւք յասպարէզ՝
Հուր ըզգեցեալ բոցակէզ,
Թորգոմեան դիւցազո՛ւնք,
Նահատա՛կք աննըկունք։

Ահա ըզսուրն շարժեաց Վարդան,
Եւ սեաւ անդունդք սարսեցին։
Ահա արին անկաւ Վարդան,
Երկինք ի խինդ պարեցին։

Վառեցարո՛ւք յասպարէզ՝
Հուր ըզգեցեալ բոցակէզ,
Թորգոմեան դիւցազո՛ւնք,
Նահատա՛կք աննըկունք։

Ե

ԵՐԳ

Վարդ մի գունեան եւ յոյժ փափկիկ
Փթթեալ թերթիւք բոյր ի բոյր,
Նըւաղեցաւ մերկ ի գեղոյն
Ի տապ բոցոյ անմաքուր։
Վայրընկեցիկ ի փառաց,
Ո՞ այլ դիցէ նըմին շուք,

---

Ասպարէզ նետուեցէ՛ք, բոցակէզ կրակով զգեստաւորուած, ո՛վ Թորգոմեան դիւցազններ, աննկուն կարիճներ։
Ահա Վարդան սուրը շարժեց, ու սեւ անդունդները սարսեցան. ահա արի Վարդանն ինկաւ, երկինքը ճախրեց հրճուագին։
Ասպարէզ նետուեցէ՛ք բոցակէզ կրակով զգեստաւորուած, ո՛վ Թորգոմեան դիւցազններ, աննկուն կարիճներ։

ԵՐԳ

Գունագեղ ու փափկիկ վարդ մը, անուշահոտ թերթերով փթթած, անմաքուր բոցին տաքութենէն գեղեցկութիւնը կորսնցուց ու մարեցաւ։
Հիմա որ ինկած է իր փառքէն, ա՛լ ո՞վ անոր պատիւ պիտի ընէ,

Կամ պըճնեսցէ ըզգըլուխ
Թառամելոյ այն ծաղկամբ։

Պատանեկին խանդաղակաթ
Եղո՛ւկ սիրոյն ըղձրանաց։
Դառըն լեղի էր ըմպելոց,
Ոչ թէ վայելք գրգուանաց։
Վայրընկեցիկ ի փառաց,
Ո՞ այլ դիցէ նըմին չուք,
Կամ պըճնեսցէ ըզգըլուխ
Թառամելոյ այն ծաղկամբ։

## Ջ

## ՆՐԳ ՀԱՅՐԵՆԻ

### ԹԱՐԳՄԱՆՕՐԷՆ

Մինչդեռ յուսով խայտայ բնութիւն
Յետ դառնաշունչ ձըմեռայնւոյն
Եւ ի գաւառն իմ հայրենի
Գեղածիծաղ դառնայ գարուն,
Մինչ բոյր ի բոյր փըթթին ծաղկունք
Եւ ճըռուողեն նորեկ ծիծառունք,
Ի քեզ ես դարձ առնեմ յայնժամ,
Ո՛վ ցանկալիդ իմ Հայաստան։

Ոչ Հելուետեան ինձ դաշտավայրք
Եւ կամ զըւարթ մարգագետինք,
Ոչ քան ըզքեզ չըքնաղագեղ
Իտալական պայծառ երկինք.

---

կամ ո՞վ իր գլուխը պիտի պճնէ այդ թառամած ծաղիկով։
Վա՜յ խանդակաթ պատանիին որ իր սիրոյն մէջ խաբուեցաւ. ան դառն լեղի ունէր խմելու, փոխանակ զգուանք վայելելու։
Հիմա որ ինկած է իր փառքէն, ա՛լ ո՞վ անոր պատիւ պիտի ընէ, կամ ո՞վ իր գլուխը պիտի պճնէ այդ թառամած ծաղիկով։

Հեռի ի քէն պանդուխտ գոլով ,
Փոյովըդ յար տապիմ անձկով .
Ի խանձարուրդ իմոց կենաց ,
Ո՛վ Հայաստան , առնեմ ես դարձ ։

Դայցեն աւուրք ուր մանկութեան
Անկցի տիոցս իմ գեղ պալար
Եւ յինէն խոյս տացեն վայելք
Կենաց՝ թեթեւ ի գարշապար ,
Ուր հէգ Մուսայս մատն ի յերեր
Մոռանայցէ երգել ըղձէր .
Ըղձինջ ի ծոցդ առնում յայն ժամ,
Ո՛վ ցանկալիդ իմ Հայաստան ։

Է

## ՏԱՊԱՆԱԳԻՐ ՎԱՂԱՄԵՌԻԿ ՄԱՆԿԱՆ

Ի զըրկաց գիրդ գորովոյ թըռեար՝ հրեշտակդ անմեղուկ ,
Անչաղախ ի յերկրէս պահեալ զոտկունքըդ փափուկ ,
Ի դառըն բաժակէ կենաց միայն զանուշակ
Մայրենի կաթին առեալ եւ զդըգուանացն ըղձաշակ .
Հանգի՛ր աստ , զերդ յօրոցիդ . քեզ երանի՛ , ո՛վ մանկիկ .
Ոչ ծանեար զարտասուս , զոր մեզ հեղուլ տաս այժմիկ ։

---

## ՏԱՊԱՆԱԳԻՐ ՎԱՂԱՄԵՌԻԿ ՏՂԵԿԻ ՄԸ

Քնքուշ գորովլին գրկէն թռար , անմեղո՛ւկ հրեշտակ , փափուկ տոտիկներդ այս երկրէն անչաղախ պահելով . կեանքի դառն բաժակէն մայրենի անուշ կաթին ու գգուանքներուն ճաշակը միայն առիր ։ Հանգչէ՛ հոս՝ ինչպէս օրրանիդ մէջ . երանի՛ քեզի, ո՛վ մանկիկ . դուն չճանչցար արցունքը , զոր հիմա թափել կուտաս մեզի ։

Ը

## ԱՌ Հ. ՂԵՒՈՆԴ ԱԼԻՇԱՆ

Ո՛վ գերաթռիչ արծուըդ վեհ օդապար,
Երկնասլացեկ բնակեալ Մասեաց ի կատար,
Անտի զօդոցն հատեալ զամբաւն ասպարէզ՝
Ծախր յանդիման անուս արփւոյն բոցակէզ.
Զանմահն յերկնից ծըծեալ ըղձուգ եթերաց՝
Հուր ի ծոցոյդ ժայթքես եւ չանթ կայծականց.
Դու զբոցաշունչ պարզեալ քոյին ըզլեզու,
Արիւնոտոգ թըռչիս ընդ դաշտն Արտազու,
Անդ ի միջի գըժոխըմբեր արհաւրաց
Պաշտօնէից մըընչես ընդդէմ տարերաց.
Դու եւ երբեմն հեղամըընչին աղաւնեակ՝
Եւ կուսակիսն կամ թէ փողար ողբերգակ,
Վըտակահոս ի վարդագոյն ճապաղիս
Ողորմ ողորմ մըընչես մընչիւնս դառնագիս.
Մերթ դու սոխակ քաղցրախօսիկ ի մըրմունջ՝
Աւետաւոր դաս մեզ օդոց բարբաչունչ,
Եւ ի կարմիր վարդին բուրեան տերեւոց

---

### Հ. ՂԵՒՈՆԴ ԱԼԻՇԱՆԻՆ

Ո՛վ գերաթռիչ վեհ արծիւ օդապար. որ երկնասլաց Մասիսին կատարը կը բնակիս, անկից ամբաւ ասպարէզը կտրելով բոցակէզ արեւին դէմը կը ճախրես, երկնքի եթերին անմահ սիւքը ծծելով՝ ծոցէդ կրակ ու կայծակ կը ժայթքես. քու բոցաշունչ լեզուդ պարզած, Արտազու արիւնոտոգ դաշտը կը թռչիս, հոն՝ դժոխըմբեր արհաւիրքի պաշտօնեաներուն մէջ՝ տարրերուն դէմ կը մռնչես. մերթ ալ հեղամընչիկ աղաւնեակ, եւ կամ կուսակիսն ողբերգակ փողար, վտակահոս վարդագոյն արիւններուն մէջ՝ դառնագի մնչիւններ ողորմ ողորմ կը մնչես. ու մերթ, սոխակ՝ քաղցրախօսիկ մրմունջով, բարբաչունչ օդեր կուգաս մեզի աւետել, եւ կարմիր վարդին բուրեան տերեւներովը

Յարաշրջեալարճ մաղթես գարունքս Հայոց։
Ո՛հ, յիրաւի հաս գարունիկդ աւասիկ,
Ի փունջ վարդից պճնեալ Հայոց աշխարհիկ.
Յարեաւ սոխակդ որ քեզ ընդոյն գեղգեղէ.
Զի՛րդ փափուկ ըղձայլալիկն յօրինէ։
Մերթ դու հրեշտակ խաղաղութեան ի համբոյր
Մեռելատիպ պատեալ ի քող սեւաթոյր,
Ի սեւասուգ տըխուր վիճին ի սրճար
Ողբանըւագ եղերերգես ի քընար.
Նա զի՞նչ ասեմ, թողեալ երկիր՝ դու ի վեր
Թեւս ի թեւթեւ սաւառնեցեալ ընդ եթեր,
Թըռեար ի գլուխ ադամանդեայ սիւնակին
Եւ խօսակից եղեր ընդ վեհ դիւցազին.
Ըղլոյս հոգեացն ըղձայլեցոյց անմահից
Քաղցրածաւալ ծորանք երգոց անուշից.
Անդ ի տախտակ մըտացդ էիցըս տիպար
Հանեալ ճըշգրիտ գեղեցկաթոյր ի նըկար.
Անդ ի թաւալ խուժէ ի ներքս ովկիան,
Եւ փըրփըրադէզ ցայտէ ի դուրս միւսանգամ.
Մերթ դու հեղեղ ուղխահոս ճոխ աւարաւ,
Եռանդընաշարժ գըլես զալիս սուրարշաւ,
Եւ մերթ յանդորր ոլորտացեալ անապակ

---

յարաշրջուարճ գարուններ կը մաղթես Հայոց։ Ո՛հ, ահա իրօ՛ք գարունիկդ հասաւ, վարդի փունջերով պճնեց Հայոց աշխարհիկը. որքան փափուկ իր դայլայլը կը յօրինէ։ Մերթ դուն, հրեշտա՛կ՝ խաղաղութեան համբոյրով, մեռելի պէս սեւաթոյր քօղով փաթթուած, սեւասուգ տխուր վիճին սնարը՝ ողբանուագ կ'եղերերգես քնարովդ. բայց ի՞նչ կ'ըսեմ, երկիրը թողլով ու թեւթեւ թեւերով եթերին մէջ սաւառնելով, ադամանդէ սիւնակին գլուխը թռար ու վեհ դիւցազին հետ խօսակցեցար. անուշ երգերուդ քաղցրածաւալ ծորումը անմահներու ոգիներուն հոյլերը զմայլեցուց. հոն՝ մտքիդ տախտակին վրայ մեր էութեանց տիպարը ճշգրիտ ու գեղեցկաթոյր նկարով մը կը պատկերացնես. հոն ովկիանը թաւալելով ներս կը խուժէ, ու փրփրադէզ դուրս կը նետուի վերստին։ Մերթ դուն, հեղեղ ուղխահոս՝ ճոխ աւարով, եռանդ-

Ձերդ բիւրեղեայն ծիծաղածաղկէ ջինջ վրանք․
Եւ յայնժամ ոչ գեղեցկատիպ բընաւ էք
Բայց քաղցրութեան հաւասարեն ինչ երբէք,
Ոչ ծաղկաւէր փըթթեալ չքնաղըն գարուն,
Գողտրիկ շուշան, յասմիկ եւ վարդ ցօղաբուն,
Ոչ զեփիւռիկ՝ գարնան խընդից պարառաջ․
Ոչ օդաթռիչ հաւուց մըրմունջք քաղցրաւաչ։
Այրարատեան ո՛վ դիւցազունք իմ Հայոց,
Զայս ախորժիմ ծածկէ դեռ հող յիւրն ի ծոց,
Ո՛ն, զաղջամուղջ լըքեալ մահուն ըզդամբան,
Անմահութեան վերաթեւէ՛ք յօթեւան,
Եւ, ոսկեփունջ առէ՛ք ի գլուխ պերճ պըսակ,
Զոր ձեզ Ղեւոնդ հիւսէ մատամբք դերունակ։

---

Նաչարժ կը գլորես ալիքներ սրարշաւ, եւ մերթ անդորր ու անսայթաք կ՚ոլորտանաս ինչպէս բիւրեղէ ծիծաղածաղկէ ջինջ վրանք մը, եւ այն ատեն ամենէն գեղեցկատիպ էակները քու քաղցրութեանդ չեն հաւասարիր երբեք, ո՛չ ծաղկասէր փթթած չքնաղ գարունը, ո՛չ գողտր շուշանը, յասմիկն ու վարդը ցօղաբուն, ո՛չ զեփիւռիկը՝ գարնան խինդերուն պարագլուխ, ո՛չ օդասլաց թռչուններու քաղցրաւաչ մրմունջները։ Ո՛վ իմ Հայոց դիւցազները Արարատեան, զոր ախորժիմ հողը դեռ իր ծոցին մէջ կը ծածկէ, ո՛ն, մահուան աղջամուղջին դամբանը թողլով՝ անմահութեան օթեւանը վերաթեւեցէք, եւ ձեր գլխուն վրայ ընդունեցէ՛ք այն ոսկեփունջ պերճ պսակը զոր իր դերունակ մատներով Ղեւոնդ հիւսեց ձեզի համար։

Թ

## Ի ՎԱՂԱՄԵՌԻԿ ՄԱՀ ՈՍԿԵԱՆ ՊԵՏՐՈՍԻ ՊԱՏԱՆԻՈՑ ՃԱՐՏԱՐԱՐՈՒԵՍՏ ՆԿԱՐՉԻ

### ԵՂԵՐԵՐԳՈՒԹԻՒՆ

Ո՛վ, զի՛ ճարտար է մահ յընտրել ըղձունձս ի սայր գերանդւոյն.
Ըղբարին եւ զգեղեցիկ միշտ ժանտ աչօքն որոնէ·
Մինչ շուշան եւ քնքուշ փըթթին ծաղկունք ի գարնան,
Արագ արագ խամրէ զնոսին ի մահատիպ գոյն դալկան։
Ո՛վ Պետրէ, մինչդեռ այն ինչ մըտեր կենացս յասպարէզ,
Զիա՛րդ բոլոր փափկութեամբ ծիծաղեցաւ քեզ կենցաղ·
Վայելչութիւն եւ գեղ դիմաց, շուք հասակիդ եւ շընորհ,
Մանկութիւն գեղածաղիկ խաղապատեալ շուրջ ըղքեւ,
Ի կոչունս վայելից կենաց տային քեզ հրաւէր·
Այլ մահ ի դաւըն ժըպիտ կացեալ հեռուստ ծիծաղէր.
Դու ի պատրանըս փաղաքուշ ձըրապուրեալ կենցաղոյս·
Տափ ըղձափի պարելով ոստեար կենացդ ի պարտէզ,
Եւ լիաձեռըն ծաղկունս անմեղ խընդից բերկրաւէտ

---

## ՃԱՐՏԱՐԱՐՈՒԵՍՏ ՆԿԱՐԻՉ ՊԵՏՐՈՍ ՈՍԿԵԱՆ ՊԱՏԱՆԻԻՆ ՎԱՂԱՄԵՌԻԿ ՄԱՀՈՒԱՆ ՎՐԱՅ

### ԵՂԵՐԵՐԳՈՒԹԻՒՆ

Ա՜խ, ի՜նչ ճարտար է մահը իր գերանդիին ծայրովն հունձքերն ընտրելու մէջ· բարին ու գեղեցիկը ժանտ աչքերովը միշտ կ'որոնէ· մինչդեռ գարնան ծաղիկները կը փթթին շուշան ու քնքուշ, արագ արագ զանոնք կը խամրէ՝ մահատիպ դալկութեան գոյն տալով անոնց։ Ո՛վ Պետրոս, մինչդեռ հազիւ կեանքի ասպարէզն էիր մտեր, ի՜նչպէս համակ փափկութեամբ կենցաղը քեզի ծիծաղեցաւ. դէմքիդ գեղեցկութիւնն եւ վայելչութիւնը, հասակիդ շուքն ու շնորհը, գեղածաղիկ երիտասարդութիւնը քեզ՝ չորս կողմէն խաղապատած, կեանքի վայելքներուն կոչունքին կը հրաւիրէին քեզ· բայց մահը հեռուէն դաւն ժպիտով մը կը ծիծաղէր. դուն, այս կենցաղին փաղաքուշ պատրանքէն հրապուրուած, ծափծափի պարելով՝ կեանքիդ պարտէզը ցատքե-

Քաղէիր, այլ զո՞ արդեօք զարդարեսցես դու նոքօք,
Ըզգըլո՞ւխդ, փունջ երփներանգ յօրինելով քեզ պըսակ,
Անպըղտոր երանութեամբ խայտալ տիոցդ ի գարնան.
Եղո՛ւկ քեզ, նոքին հաւս մեռելակիր դագաղոյդ,
Եդեալ ի զարդ, ի տըխուր թառամեսցին ի դամբան։
Մահ ըզհետոցդ ընթացեալ դիտէր զոտիցըդ զարշապար,
Զըտեսե՞ր զնա որ զանխուլ սողոսկելով ծաղկանց մէջ,
Ընդ ոտիւքըդ մահաչունչ իբր ըզվիշապ գալարէր.
Եւ մինչ դու վըրձնիդ ի ծայր նըկարելով ըզբնութիւն,
Զերկինս զերկիր ամփոփէիր համայն ի դոյզն ի տախտակ,
Նա ի սուր սայր գերանդւոյն զշիրիմդ ի հող նըկարէր.
Եւ ապա քեզ ընդ առաջ յանկարծ ոստեաւ մոլեգին,
Կամեցաւ ըզմահացուն ածել յետինն ըզհարուած.
Գութ չարկին ի նա հասակդ նորափըթիթ ի բողբոջ,
Ոչ կայտառ եւ գեղանի դէմքըդ շնորհաց օթեւան,
Ոչ աչկունքըդ ծաւիք, ականողիք սեւաթոյր.
Եհար ըզքեզ անագորոյնն, աւա՛ղ, ի խոց կարեվէր,
Եւ յաղթ բազկաւ գըլորեցոյց խոր ի մահիճըս ցաւոց,
Սեւափետուր թեւօքըն պինդ անդէն ըզքեւ պատեցաւ,

---

ցիր, ուր բերկրալէտ ուրախութեան ծաղիկները լիաձեռն կը քաղէիր. բայց ո՞վ արդեօք պիտի զարդարես անոնցմով. գլո՞ւխդ, քեզի երփներանգ պսակ մը յօրինելով, անպղտոր երանութեամբ կեանքիդ գարունին մէջ խայտալու համար։ Ափսո՜ս քեզի, մեռելակիր դագաղիդ մօտ՝ անոնք իբր զարդ դրուած, տխուր դամբանին մէջ պիտի թառամին։ Մահը ետեւէդ կուգար ու զարշապարներդ կը դիտէր. չտեսա՞ր զայն որ իր ծաղիկներուն մէջէն թաքուն սողոսկելով, ոտքերուդ տակ մահաչունչ վիշապի պէս կը գալարուէր. եւ մինչ դուն վրձինիդ ծայրովը բնութիւնը նկարելով, երկինքն ու երկիրը փոքր տախտակի մը վրայ կ'ամփոփէիր, ան գերանդիին սուր սայրովը հողին վրայ շիրիմդ կը նըկարէր, եւ յետոյ, յանկարծ, ցատքեց մոլեգին եւ ուզեց մահացու վերջին հարուածը զարնել. զինքն ի գութ չշարժեցին ո՛չ նորափթիթ բողբոջուն հասակդ, ո՛չ կայտառ ու գեղանի դէմքդ՝ շնորհներու օթեւան, ո՛չ ծաւի աչքերդ, ո՛չ սեւ ականողիքդ. աւա՜ղ, անգութը քեզ զարկաւ ու կարեվէր խոցեց, եւ յաղթ բազուկով գլորեց ցաւերու մահիճին մէջ. սեւափետուր թեւերովը քեզի ամուր փաթթուեցաւ, իր ժահահոտ ու զազիր շունչը քու մէջդ փչեց, այդ վարդագոյն այտերուդ

Փըչեաց ըզչուն՛չ իւր ի քեզ ըզժահահոտն եւ զազիր ,
Այլագունեաց ըզկարմրութիւն այդ վարդագեղ այտերուդ,
Եւ մարմին նըւաղեցաւ մեռելատիպ ի զալկան ։
Իսկ դու լըռե՞ս եւ անտրտո՞ւնջ կաս՝ եղկելի՛ պատանեակ ,
Եւ ոչ ի յողբ անմըխիթար հեծես ի սուգ աղեխարշ •
Ոչ յողոք անկեալ մահու՝ ըզգըթութիւն պաղատիս,
Ոչ յոգւոց հանելով ի վեր յերկինըս բողոքես •
Կենացս անցաւորի խաբեպատիրըն բաժակ ,
Ա՛հ, թոյնմառոյց քեզ դառնորակ՝ զըւարճութեանցըն փոխան
Սըրիւր կենացըդ վըճիտ դառնայ ի հուն իւր ի հող ,
Թօթափեցան եւ խամրեցան ծաղիկք չքնաղ մանկութեանդ ։
Իսկ դու լըռե՞ս եւ անտրտո՞ւնջ կաս՝ եղկելի՛ պատանեակ ։
Այո՛ , այո՛ , ըզնազելին խոնարհեցոյց իւր զըլուխ ,
Որպէս շուշանն ի հովտի հարեալ ի խիստ խորշակէ •
Ապշեցաւ մահ ինքնին՝ մարդկան ոսոխըն դժնեայ ,
Ոչ այնչափ արիութիւն յառոյգ ոգւոյն յուսալով ։
Գետրէ՛ , եղբա՛յր իմ սիրելի , ո՛վ կէս հոգւոյս իմ հատոր ,
Աւա՜ղ, ննջես արդ ի հող ըզքուն մահուն անյարիր •
Ո՞ տայր ինձ ի ժանիս լինել մահուն քո փոխան •

---

կարմրութիւնը այլագունեց , ու մարմինդ նուաղեցաւ մեռելակերպ գալկութեամբ ։ Եւ դուն կը լռե՞ս ու անտրտո՞ւնջ մնաս, ո՛վ եղկելի պատանի , ու անմխիթար ողբալով չե՞ս հեծեր աղեխարշ սուգով • մահը ողոքել ջանալով՝ անոր գթութիւնը չե՞ս հայցեր , հառաչելով՝ երկինքին չե՞ս բողոքեր • այս անցաւոր կեանքին խաբեպատիր բաժակը քեզի թոյն մառոյց փոխանակ զուարճութեանց • կեանքիդ վճիտ աղբիւրը կը դառնայ դէպ իր հունը , դէպ ի հողը • չքնաղ երիտասարդութեանդ ծաղիկները թօթափեցան ու խամրեցան • իսկ դուն կը լռե՞ս ու անտրտո՞ւնջ կը մնաս, ո՛վ եղկելի պատանի ։

Այո՛ , այո՛ , իր նազելի գլուխը խոնարհեցուց , ինչպէս շուշանը հովտին մէջ՝ խիստ խորշակէ զարնուած • մահը ինքն իսկ , մարդոց դժնէ թշնամին , ապշեցաւ , չյուսալով ա՛յդքան արիութիւն այդ առոյգ ոգիէն ։

Գետրո՛ս. ո՛վ իմ սիրելի եղբայրս • ո՛վ հոգւոյս կէս կտորը • աւա՛ղ, հիմա հողին մէջ մահուան անյարիր քունը կը ննջես • ո՛ւր էր որ քու տեղդ ես իյնայի մահուան ժանիքը • քանի՛ անգամ աղաչեցի վայն որ իմ կեանքիս թելը կտրէ եւ քու չքնաղ երջանկաւէտ օրերուդ հիւսէ, եւ

Քանիցս ընդ ողոքեցի կորել ըղթել իմ կենաց
Նա ի քոյդ հիւսել չըքնաղ երջանկաւէտ ընդ աւուրց,
Եւ կամ գէթ զիս մահակից դընել մահճիդ առ ընթեր.
Այլ ոչ այնպէս յերկնից մեզ վիճակեցաւ երկոցուն.
Քեզ մեռանիլ, ինձ արտասուք՝ ողբալ ըզմահ քո յաւերժ.
Ընդ գեղեցիկ որկնաւ՝ ուսմանց եւ իմաստից ի տաճար
Կրթեցաք ի միասին ի գերապանծ ասպարէզ,
Եւ կապեցաք մըտերմական սիրով հոգի ընդ հոգւոյ.
Այլ ինձ եղո՛ւկ, բիւր աւա՛ղ, զի կանխեցեր դու քան զիս.
Դեռ ոչ իսկ վայելեալ զարդիւնս անմահ վաստակոցդ,
Ցոյժ տարաժամ հասեալ վերայ մահուն մըռայլ աղջամուղջ,
Ըզգեղեցիկ ապագայիդ չիջոյց ըղճրագըն պայծառ.
Եւ արդ ի սիրտ ննջես երկրի ըղքուն յաւերժ անյարիր...
Այլ ո՛չ, յերկինըս կենդանի չնչես դու զօդ կենսունակ։
Ո՛վ թեւապարիկք հոյլք անմահից լուսերամ,
Դուք ընդ խառնեցէ՛ք ի խումբ դասուդ գեղապար,
Անդ մանկութեան նորա զգարուն փըթթեցուցէ՛ք անթառամ,
Ցանմահ ծաղկանց յօրինեցէ՛ք պըսակ ի գլուխ գեղափայլ,
Պետրէ՛, տեսցո՛ւք դարձեալ զիրեարս յերանաւէտն յայն կայան։

---

կամ գէթ մահճիդ քովը զիս մահակից դնէ քեզի. բայց երկնքէն մեզի երկուքնուս այսպէս չվիճակուեցաւ. քեզի՝ մեռնիլ, ինծի՝ արտասուել ու յաւիտեան ողբալ քու մահդ. գեղեցիկ երկնքին տակ՝ ուսմանց ու իմաստից տաճարին մէջ միասին կրթուեցանք գերապանծ ասպարէզին համար.; ու մտերմական սիրով հոգի հոգիի կապուեցանք. բայց վա՜յ ինծի, հազա՛ր վայ. վասն զի դուն զիս կանխեցիր. դեռ աշխատութեանդ անմահ արդիւնքը չվայելած, մահուան մռայլ աղջամուղջը՝ վրայ հասնելով՝ գեղեցիկ ապագայիդ պայծառ ճրագը մարեց. ու հիմա երկրի սրտին մէջ յաւերժական անյարիր քունը կը ննջես.. բայց ոչ, երկնքին մէջ դուն կենդանի՝ կենսունակ օդը կը շնչես։ Ո՛վ լուսերամ անմահներու թեւապարիկ հոյլեր, զայն խառնեցէ՛ք ձեր գեղապար դասուն մէջ. անոր երիտասարդական գարունը հոն անթառամ փթթեցուցէ՛ք. անմահ ծաղիկներէ պսակ յօրինեցէ՛ք անոր գեղափայլ գլխուն։ Պետրո՛ս, գիրար դարձեալ պիտի տեսնե՛նք այն երանաւէտ կայանին մէջ։

## Ի ՄԱՀ ՅԱԿՈԲԱՅ ՋԱՄՋԵԱՆ

Եկո՛ւ, քընա՛ր, աղեկըտուր թելերով,
Զըւարթ պըճնած երբեմն անոյշ վարդերով.
Ո՛հ, այն փունջեր թափթըփեցան իմ չորս դին,
Զի սիրելին իմ գոցուեցաւ ի չիրիմ։
Եկո՛ւ կապեմ ճակտէդ նոճեայ մի պըսակ,
Եւ տխրութեանց ոգիք զարնեն քու նըւագ.
Քու մըրմընջէդ հետ խառնըւած զեփիւռիկ
Թող փըչէ ցուրտ հոն ուր հանգչի Յակոբիկ։

Ազնի՛ւ հոգի ու սիրեցեալ ամենէն.
Ի՛նչպէս չուտով ելար կենաց պարտիզէն,
Ու հասակիդ ծաղիկներով զարդարուած,
Ա՛յդպէս կանուխ իջեր ի հող տխրամած,
Ամբողջ գարուն մի չի տեսած այս կեանքին,
Մըթին գաղտնիք չիրմին ըզքեզ պատեցին.
Քոյդ մըտերմաց, որոց էիր քաղցրիկ սէր,
Տես ի՛նչ աւանդ թողուցիր, սեւ կսկիծներ։

Գերեզմանին դըռնէն մըտար դու երկինք,
Ուր անթարշամ կենաց բուրմիս ի հարկինք,
Հոգիդ սլացաւ մաքուր մարմնէդ առ Աստուած,
Ինչպէս անուշ հոտ մը ծաղկէն բաժնըւած.
Փափուկ դրկէն հէք քուրերուդ սըգաւոր
Թըռեար ի ծոց վաղամեռիկ հօր եւ մօր.
Բայց մինչ քեզմով խնդան հայրիկդ ու մայրիկ,
Ա՛հ, ի՛նչ կ՚ընեն եղբարք ու քորք նազելիք։

Երէցըս որբ, նստած դարձեալ ի սեւեր,
Այլ ո՞վ սրբէ անոնց աչքին արցունքներ.
Սիրաբողբոջ տունկեր դեռ նոր ծաղկած դուք,
Այս քանի՛ հեղ պարնէ վրանիդ մահուան շուք.
Դու որ անոնց էիր եղբայր մի սիրուն,
Ցիչէ՛՝ կրկին ունիս այժմիկ գողտր անուն,
Այդ սրտակէզ հարազատացդ անբաժան
Հոլաթեւիկ եղբայր, հրեշտակ մի պահպան։

Սլլէ լուսնակ գերեզմանաց այցելու,
Քող մի դէմքին ձըգած ճերմակ ամպերու.
Մութ կամարին վերայ մժգոյն թափառկոտ,
Տես գայ շիրմիդ, գերդ տըխուր կոյս ամըչկոտ,
Մինչ զովագին փըչէ հովիկ անուշակ
Ու չորս կողմէն բուրեն յասմիկ մանուշակ,
Ո՜հ, մօտ եկո՛ւր յայնժամ առ սիրտըս ցաւած,
Հեզիկ թեւով հսկէ՛ ի քուն սիրելեաց։

Ծաղկէ նախ հոն միշտ շուշան ըսպիտակ,
Անմեղութեան սրտիդ ամրի՞ նըշանակ.
Վարդըն կարմրիկ ծաղկէ հոն սուր փուշերով
Ցայտնել բ՛նչպէս քու կեանքդ էր լի խոցերով.
Խանդաղակաթ տեսեր ըզման ծընողաց,
Դառն հարուածով մահուն եւ դու զարնըւած՝
Մընաս բարով ըսիր կենացդ արեւուն
Եւ մանկութեան ծիծաղադէմ օրերուն։

ԺԱ

## Ի ՄԱՀ ԱԶՆԻՒԻ ԼՈՒԹՖԵԱՆ

Ո՞ւր ես, Ազնի՛ւ, տեսանք երթալդ,
Ուրախ դարձիդ չառինք մենք լուր.
Քեզ գրկելով համբայ դըրինք.
Գրկերնիս բաց կ'սպասենք զուր.
Ո՛հ, ամենուն տըխուր ձայնիւ
Կը հարցընենք. ո՞ւր է Ազնիւ։

Ի՞նչ աւանդներ յանձնեցինք քեզ.
Մօրդ ու քըրոջդ արտասուաքին,
Հայրագութիդ եւ մըտերմաց
Այրած սրտերն ու'ողջոյնն ջերմին։
Երբ գաս մեզի ուրախ դարձիւ,
Ի՞նչ փոխարէն բերես, Ազնի՛ւ։

Ու դեռ ինչե՞ր ենք պատրաստեր,
Թէ զքեզ նորէն գրկենք սիրով.
Քեզի նըման ծաղկի փունջեր
Ու հանդէսներ ցնծուն պարով.
Բայց սրտերնիս լի է ահիւ.
Ո՛հ՞, կ'ուշանա՛ս, ինչո՞ւ, Ազնի՛ւ։

Աւա՜ղ, տեսէ՛ք, սուգ առաւ ծով.
Զինքը տանող դարձաւ հովիկ,
Թեւերըն կախ փըչէ տրտում.
Ի՞նչ լուր բերեր մեզի, հովի՛կ.
Այն ձեր սրտի հատորն ազնիւ
Թըռաւ գընաց, մեռաւ Ազնիւ։

Վա՜խ, չունեցար, սիրո՛ւն Աղնիւ,
Գոնէ արխուր հողին վըրայ .
Արցունքներով մէկ թաց շիրիմ ,
Այս խօսքերով կանչնէր վըկայ .
«Հոս իր բարքով դիմօքն աղնիւ
Տաղկահասակ ննջէ Աղնիւ : »

Ու չըլլալս պիտի, ափսո՜ս ,
Քու սիրելեաց չորս դին բոլոր
Աղեկիզիկ հառաչանքներն ,
Ու սոխակին երգ սըգաւոր .
Եւ ոչ երկինք ու՛աստղունք անթիւ
Անուշ ցօղով լան քեզ , Աղնի՛ւ :

Թառամեցաւ ծովընկեցիկ
Փափկասուն վարդ իւր հասակին .
Աղի ալեաց անդունդին մէջ
Շիջաւ արեւ այն կըտրիճին .
Յաւերժհարսունք գիտախորուիւ
Ծովուն մինակ լան քեզ , Սղնի՛ւ :

ԺԲ

Ն·Ր·Գ

Բացան դըռունք նոր տարւոյս, Հա՛յր ցանկալի.
Բացցին եւ քեզ նոր գանձք շնորհաց անըսպառ;
Հրեշտակք ըղձքեւ կացցեն հըզօր հովանի .
Զի անսասան կեցցես բազում ամաց չար :

---

ՆՐԳ

Նոր տարուան դռները բացուեցան , ո՜վ Հայր ցանկալի . Թող քեզի ալ բացուին շնորհներու նոր գանձեր անսպառ . Հրեշտակները վերեւը

Անկանակիր աւուրցդ յաւերժ պերճափառ,
Եւ մեր ի քոյդ ոլորեսցին կենաց թելք․
Կեցցէ զգլխովդ երանութեան աստղըն վառ․
Մընան յերկինս անմահութեան քեզ վայելք։

Համբաւըդ պերճ բացցէ ուղի դիւրանորդ
Մանկականաց մերոց ոտից գայթ ի գայթ․
Ի բազմափայլ հոգւոյդ ծըրից լուսայորդ
Որդւոցդ ի մեզ հասցի անշիջ ճառագայթ։

## ԺԳ

## ԵՐԳ

Ո՛վ երջանիկ դու նըժդեհ,
Հիւր մեզ եկեալ պանծալի,
Խաղաղութեան ոսկեփունջ
Փայլէ յաջոյդ ձիթենի։

---

հզօր հովանի մը տարածեն, որպէս զի անսասան մնան բազմաթիւ տարիներու շարքին մէջ։

Անկանակիր թող ըլլան մինչեւ օրերդ ու պերճափառ․ ու մեր կեանքին թելերը թող քու կեանքիդ ոլորուին. երջանկութեան վառ աստղը գլխուդ վերեւ թող ապրի․ երկինքին մէջ անմահութեան վայելքները քեզի կը սպասեն։

Պերճ համբաւդ դիւրագնաց ճամբայ մը թող բանայ մեր մանկական սայթաքուն ոտքերուն․ բազմափայլ հոգւոյդ լուսայորդ ծիրքերէն թող անշիջ ճառագայթ մ'իջնայ մեր՝ քու որդիներուդ՝ վրայ։

## ԵՐԳ

Ո՛վ երջանիկ պանդուխտ, որ մեր հիւրն ես պանծալի, ձեռքիդ մէջ կը փայլի խաղաղութեան ոսկեփունջ ձիթենին։

Ճախրեն ըղձիւ թեւապար
Հաւատ եւ Սէր լուսաթռիչ,
Մաքեալ Յուսոյ կենսաւէտ
Նշոյլ ի սիրտ բոլորից։

Հայրըն հոգւոց մեր Գրիգոր՝
Սերկեան աւուր ի հանգէտ՝
Զըւարթ ի Քեզ ակնարկէ՝
Նկեալ իւրում ատենն ի տես։

Ըղձիւ ակումբ լուսերամ
Առեալ խայտամբ գեղապար.
Աստեղազարդ Քեւ այս մեր
Ծնծայ ողջոյն սուրբ Տաճար։

ԺԴ

ԵՐԳ

ԹԱՐԳՄԱՆԵԱԼ Ի ԳԱՂՂԻԱԿԱՆԷ

Մի՛ ի շաւիղ ընդ մոլար
Ուր ընթանայն մեղաւոր.
Այլ 'նդ Տէրունեան ճանապարհ
Գնասցես, որդեա՛կ, անխոտոր.
Լե՛ր ուսանող եւ զըւարթ.
Զանմեղութիւն ի քեզ պահեա՛ գեղազարդ։

Լիջի՛ր խոնարհ եւ ցածուն.
Մի՛ մեծատան բազմազանձ

---

Քու շուրջդ թեւապար կը ճախրեն Հաւատքն ու Սէրը լուսաթըռիչ, Յոյսին կենսատու նշոյլը ամենուն սրտին մէջ ծագեցնելով։
Մեր հոգիներուն հայրը, Գրիգոր, այսօրուան հանդէսին մէջ՝ իր [illegible], զուարթօրէն քեզ կը դիտէ։
Շուրջդ լուսեղէն ակումբ մը կազմած, գեղապար կը խայտանք. քեզմով մեր այս աստեղազարդ տաճարը կը ցնծայ հիմակ։

Եւ վեհից փառք անկայուն
　　Արկցեն ի սիրտըդ նախանձ.
　　Չի ոյժ փառաց յաղթական՝
Սիրոյն անմեղիկ եւ անարատ մանկութեան ։

Ըղձերդըս կուռ բարձրաձիգ
　　Տէր ընդ ոտիւք տապալէ.
Այլ մամռապատն ի քունիկ
　　Միշտ հաշտ ականբ ակնարկէ.
　　Ուր մայրն ի յերգս հրճուալիս
Սընուցանէ ամբիծ սիրոյն ըղձայրիս ։

## ԺԵ

## ՔԵՐԹՈՂԱԿԱՆ ՈԳԻՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒ Ի ՔՈՒՆ

### ԵՐԳ

Ապողոնի որդիդ, ննջե՞ս ընդ ուռենեացն հովանեաւ,
Պըսակաւորդ ի հիւս դափնեաց նորա յաւէժ անթառամ.
Քեզ ըղպաշտօն հարկանեն անմահ Մուսայքն անուշիկք,
Եւ ի մեղմիկ մընչէ, աւա՜ղ, կացեալ քընարդ առ ընթեր ։
Գեղածաւալ որպէս աղբիւր զեղեալ ի սուրբ ականէ,
Այնպէս խանդից ի ծոցոյդ ցայտեն ծորանք քաղցրաբուխ,
Դաշնակութիւնք ի լեզուէդ կաթեն առատ մեղրածոր.

---

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՔԵՐԹՈՂԱԿԱՆ ՈԳԻՆ ՔՆԱՑԱԾ

### ԵՐԳ

Ապողոնի որդի՛, ուռիներուն շուքին տակ կը քնանաս, դուն որ անոր յաւէտ անթառամ դափնիներուն հիւսքովն ես պսակուած ։

Անմահ անուշ մուսաները քեզի կը սպասաւորեն, եւ քնարդ, քովդ ի վեր ինկած, մեղմօրէն կը հնչէ ։ Ինչպէս աղբիւր մը՝ գեղածաւալ մաքուր ակունքէ մը բղխած, այնպէս քու ծոցէդ խանդերու ծորանքները կը ցայտեն. լեզուէդ կը կաթին առատ մեղրածոր դաշ-

Եւ դու Նըրճի՛ս ընդ վարսաւրեղ ընդ ուռենեացն հովանեաւ,
Ապողոնեան ի հիւս դափնեաց պըսակաւորդ ի ճակատ.
Օ՛ն արի՛, ե՛լ ի հանդէս, աշխարհալուր հա՛ր ըզփողդ,
Հընչեցո՛ ի լուր հայկեան զուպարայաղթ դիւցազանց
Թուենելոց յանդընդային ի վայր մահուն աղջամուղջ.
Եւ կանգնեսցին միանգամայն խոր ի չիրմացն յարուցեալք,
Քեզ ժըպիտ հըրճուանաց հանեալ ի դէմս վեհափառ՝
Ճախրեսցեն լուսաթոյր վեհից յաւերժն ի կայան,
Անմահութեան ըմպել ի քէն մատըռւակեալն ըզբաժակ։

## ԺԶ

## ԵՐԳ ՄՕՐ
## Ի ՎԻՐԱՅ ՄԱՆԿԱՆ ՔՈՒՆԵԼՈՅ

Նընջեա՛ մանո՛ւկս աչօք վըճիտ,
Նընջեա՛ անոյշ յօրորոցիդ.
Այդ հրաշագեղ գոհար բըբունք,
Որ յարթնութեանդ միշտ երերունք,

---

հակութիւններ. եւ դուն կը քնանա՛ս վարսագեղ ուռենիներուն շուքին տակ. դո՛ւն որուն ճակատն Ապողոնեան դափնիներու հիւսքովն է պսակուած։ Օ՛ն, ելի՛ր, հրապարակ նետուէ՛, աշխարհալուր փողդ հնչեցո՛ւր, որպէս զի մահուան անդնդային աղջամուղջին մէջ քնացած հայկական զուպարայաղթ դիւցազները յանն ու ամէնը մէկանց իրենց գերեզմաններէն յառնելով ոտքի կանգնին, եւ քու վեհափառ դէմքիդ վրայ հրճուանքի ժպիտ մը բերելով՝ լուսաթոյր ճախրեն դէպ ի վեհերու յաւերժական կայանը՝ ըմպելու համար անմահութեան բաժակը զոր դուն կը մատռուակես։

### ՄՕՐ ԵՐԳԸ ՔՆԱՑԱԾ ՄԱՆԿԱՆ ՎՐԱՅ

Քնացի՛ր վճիտ աչքերով մանո՛ւկս, քնացի՛ր անուշ օրօրոցիդ մէջ. այդ հրաշագեղ գոհար բիբերդ, որ արթնութեան միջո-

*Ո՛հ, զի՛ խաղաղ եւ անշարժիկ*
*Փակեալ ի նինջ են աւասիկ.*
*Շրթունքդ շուշանք լցեալ շաղով*
*Եւ գիրգ մարմինդ երկնից գեղով։*
*Ննջեա՛, մանո՛ւկս աչօք վըճիտ,*
*Ննջեա՛, անոյշ յօրորոցիդ։*
*Ցօղն ի վերայ վարդին թերթից,*
*Իմ ցօղ աչաց վառ վառ այտիցդ.*
*Թշուա՛ռ մանկիկ, քեզ մօր միակ*
*Ո՛հ, անժըպիտ են զորովանք.*
*Զուրկ դեռափթիթ ի տիսդ ամբիծ*
*Հօր կաթոգին ի համբուրից,*
*Որ ի գըգուանս իւր սիրակէզ*
*Այսպէս փափկիկ ծընաւ ըզքեզ,*
*Աւա՛ղ ի մէնջ գընաց հեռի,*
*Թող ըզքեզ որբ եւ զիս այրի,*
*Զանդրանիկ իւր որդեակ չըքնաղ*
*Եւ զտարփալի հարսնըն մատաղ։*
*Ոչ գեղանի քեզ այլ եղբայր*
*Լիցի ընկեր սիրապատար.*
*Անմեղունա՛կդ իմ աղաւնեակ,*
*Դու ինձ միայն մնացեր, որդեա՛կ.*

---

ցիդ երերուն են միշտ, ի՜նչպէս խաղաղիկ ու անշարժ՝ քունի մէջ գոցուած են հիմա. շրթներդ, շուշաններ՝ շաղով լեցուած, ու գիրգ մարմինդ՝ երկնքի գեղեցկութիւնովը։ Քնացի՛ր, վճիտ աչքերով մանո՛ւկս, քնացի՛ր անուշ օրօրոցիդ մէջ։

Ինչպէս ցօղը՝ վարդին թերթերուն, այնպէս աչքիս ցօղը՝ վառ այտերուդ. Թշուա՛ռ մանկիկ, ուրիշ բան չունիս բայց մօրդ անժպիտ գորովանքը. դեռափթիթ ամբիծ հասակիդ մէջ՝ զուրկ մնացիր հօրդ կաթոգին համբոյրներէն. ան որ իր սիրակէզ գգուանքներուն մէջ քեզ ծնաւ այդպէս փափկիկ, աւա՜ղ, մեզմէ հեռու գնաց, որբ ձգելով զքեզ, իր անդրանիկ չքնաղ որդեակը, ու այրի՝ զիս, իր մատաղ հարսը տարփալի։ Ուրիշ եղբայր մը գեղեցիկ՝ սիրապատար ընկեր պիտի չըլլայ քեզի. Ո՛վ իմ անմեղ աղաւնեակս, դուն միայն ինծի մնացիր, որդեա՛կ. բայց

Այլ մեք լքեալ թողաք անտէր ·
Եւ մինչ ես մայրդ քեզ առընթեր
Ըղձայգ ցերեկ ի կոծ ամբաւ
Սրտահառաչ մաշիմ ի ցաւ ,
Ժպտիս ճըչես քաղցրազրուցիկ
Կամ յօրօցիդ հանգչիս հեզիկ ·
Եւ հայր քոյին ի հող տըխուր
Գերեզմանաց անդր ի բըլուր
Շուրջ պարառեալ նոճեաց ի սեաւ
Ննջէ մահուն ընդ ցուրտ չիրմաւ ։
Արդ ի չրթունսդ իսկ վարդաձոյլ
Զըւարթութեան փայլէ նըշոյլ ·
Ընդէ՞ր երեսքըդ ժպտեցան ·
Հրեշտա՞կք եղեն քեզ յանդիման ,
Որ յերազիդ քում ոսկեթեւ
Մօտին զայտերըդ համբուրել ,
Ոմն զձիւնափայլ պարանոցիկդ ,
Այլ ըզթաթիկըս քո փափկիկ ,
Կամ յանուանէդ ըզքեզ ձայնեն
Կամ շուրջ ըզքեւ պար բոլորեն ·
Այլք խաղալով ընդ քոյդ օրոց
Ցունկնըդ մընչեն ձայնիւ երգոց ·
« Ի քո քաղցրիկ մօրէդ ծածուկ ,

---

մենք լքուած անտէր ձգուեցանք · եւ մինչ ես՝ մայրդ, քու քովիկդ, գիշեր ցորեկ անհուն կոծով՝ սրտաճառաչ ցաւով կը մաշիմ, դուն կը ժպտիս կը ճչես քաղցրազրուցիկ, կամ օրօրոցիդ մէջ հեզիկ կը հանգչիս. եւ քու հայրդ, տխուր հողին մէջ, գերեզմաններու այն բլրին վրայ, սեւ նոճիներէն շրջապատուած, մահուան ցուրտ շիրմին տակ կը քը-նանայ, այժմ, վարդաձոյլ շրթունքիդ վրայ զուարթութեան նշոյլ մը կը փայլի · ինչո՞ւ երեսներդ ժպտեցան, հրեշտակնե՞ր դէմդ ելան ու ոսկեթեւ երազիդ մէջ կը մօտենան այտերդ համբուրելու, մին՝ ձիւնա-փայլ պարանոցիկդ, միւսը փափուկ թաթիկներդ, կամ անուանովդ քեզ կը կանչեն, կամ շուրջդ պար կը բոլորեն, ուրիշներ օրօրոցիդ հետ խաղալով, երգեցիկ ձայնով ականջիդ կը մնչեն · «Եկո՛ւր, քու քաղցրիկ

Մանկի՛կ, յերկինս ե՛կ փախիցուք։»
Եւ քո արդեօք թըռեա՞ւ հոգեակ,
Զարթի՛ր, զարթի՛ր, իմ աղաւնեա՛կ.
Կաթն անուշիկ քընոյդ փոխան
Քեզ չամբեցից մեղրածորան։

ԺԷ

## ՈՂԲ ՄԱՆԿԱՆ
## Ի ԹՌՉՆԻԿՆ ԻՒՐ ՎԱՂԱՄԵՌԻԿ

Ո՛վ իմ թռչնիկ քաղցրալեզուի,
Հիւր եւ բընակ ընդելական
Անուշահոտ մեր պարտէզին,
Որ տանձենւոյն զըւարթափթիթ
Վարսագեղիցն ի տերեւոց
Մշտամըմունջ յերգ անուշիկ
Ծըւիկ ծըւիկ ինձ ձայնէիր.
Աւա՛ղ, ընդէ՞ր այդպէս անշարժ
Կաս դու լըռիկ եւ անբարբառ,
Պուտ պուտ գունով փոքրիկ գըլուխդ
Կախեալ ի վայր, ողո՛ք իմ տեսիլ.

---

մօրմէդ ծածուկ, եկո՛ւր, մանկի՛կ, երկինք փախչինք»։ Եւ արդեօք արդէն թռա՞ւ հոգիդ։ Արթնցի՛ր, արթնցի՛ր, աղաւնեա՛կս. քունիդ փոխարէն անուշիկ կաթ պիտի տամ մեղրածորան։

## ՄԱՆԿԱՆ ՈՂԲԸ ԻՐ ՎԱՂԱՄԵՌԻԿ ԹՌՉՆԻԿԻՆ ՎՐԱՅ

Ո՛վ իմ քաղցրալեզու թռչնիկս, մեր անուշահոտ պարտէզին հիւրն ու բնակիչն ընտանի, որ տանձենիին զուարթափթիթ վարսագեղ տերեւներէն մշտամրմունջ անուշ երգով ծըւիկ ծըւիկ կը ձայնէիր ինծի, աւա՛ղ ինչո՞ւ այդպէս անշարժ կը մնաս լռիկ ու անբարբառ. պուտ պուտ գոյնով փոքրիկ գլուխդ վար է կախուած, ողո՛ք իմ տեսարան։ Ո՞ւր

Ո՞ւր քոյդ պարել վազեալ ի Թինդ,
Ոստոց ի յոստ չուստ ոստոստելդ.
Ի կոչ ձայնիս քեզ սիրալուր՝
Շուրջ ըղձըլխովս առեալ Թըռիչս
Ընդ խոպոպիս իմ լաղայիր,
Զիս սուր ի քիԹ փայփայէիր։
Այլ ո՛հ, այժմիկ մեռա՞ր արդեօք.
Ահա սեւուկ քոյին աչկունք
Են նըւաղեալ Թերաբացիկ.
Ե՛կ, Նազելի՛ս, տաց քեզ հողոյ,
'Ի աղօԹեցից վասն հեզ ոգւոյդ.
Զի ի պարտէզըն Յիսուսի,
(Են են անչուշտ եւ անդ Թռչնիկք),
Ոսկեձամուկ ի նոր փետուրս
Աստ անդ երգով Թեւապարիկ
Զունկն Յիսուսի զմայլեցուցես.
Սակայն խնդրե՛մ՝ անտի դարձեալ
Մըւիկ ծըւիկ ինձ ձայնիցես։

---

են քու Թնդաղին վազելով պարելներդ, ոստէ ոստ չուստ ոստոտելներդ. ի լուր ձայնիս՝ զոր կը սիրէիր, գլխուս չուրջը Թռչըտելով, խոպոպներուս հետ կ խաղայիր, սուր քիԹովդ զիս կը փայփայէիր. այլ ո՛հ, հիմա մեռա՞ր արդեօք. ահա սեւուկ աչուկներդ նուաղած են ու կիսաբաց. եկո՛ւր, Նազելիս, քեզ հողին մէջ դնեմ ու հեզ հոգւոյդ համար աղօԹեմ, որպէս զի Յիսուսի պարտէզին մէջ (անչուշտ այնտեղ ալ Թռչնիկներ կան) ոսկեճամուկ նոր փետուրներով հոս ու հոն Թռչելով Յիսուսի ականջն զմայլեցնես։

## ԺԸ

## ՀՐԱՒԷՐ Ի ՄԱՐՏ ԽՈՍՐՈՎՈՒ ՄԵԾԻ

### ԵՐԳ

Ի պահոյս Արամեան
Պերճ առիւծ սիգախրոխտ
Խոսրով, արքայ, դի՛ ցազանց,
Մըռընչէ ահաւոր.
Դող առին Սասանեանք.
Գուպարաւորաց շողան զէնք.
Ի մարտամբոխ դրդին ի ռազմ.
Ահագնատրոփ ի քայլ ոտից
Հեծեն կայանքն անդնդայինք։
Ցոլաց արփին ի դաշտ փառաց.
Եւ հանդիսակից հայ փառաց.
Շարժին ահեղ ի հողմոց
Ի բարձրութիւնս արծուեդրօշք.
ՅԱրամեան գահոյից
Ելանէր արքայն մեծ.
Գոչիւնք փողոցն որոտմանց
Զարիւնռուշտըն հրաւէր

---

## ՄԵԾՆ ԽՈՍՐՈՎԻ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՀՐԱՒԷՐԸ

### ԵՐԳ

Արամեան գահուն վրայ՝ պերճ առիւծ սիգախրոխտ, Խոսրով, դիւցազուններու արքան, ահաւոր ձայնով կը մռնչէ։ Սասանեանները կը դողան։ Պատերազմիկներուն զէնքերը կը շողան, ու դէպ ի մարտ կը շարժին։ ահագնատրոփ ոտքերու քայլին տակ անդնդային կայանները կը հեծեն։ Արեւը ցոլաց փառքի դաշտին վրայ. հայ փառքին հանդիսակից ելաւ. օդին մէջ արծուեդրօշները կը շարժին ահեղ հովերէն. Արամեան գահէն ոտքի կ'ելլէր մեծ արքան. փողերուն որոտագին գոչիւնները արիւնռուշտ հրաւէրը հնչեցին սու-

Հնչեցին սոսկալի.
Զարթեան արձագանք ղողորդմամբ.
Խաւարով արքայ նայէր ի ճեմ.
Խնդացին վաշտք նահատակաց
Լըւեալ խաղմից զաւետիս զոռ.
Խնդացին վաշտք նահատակաց
Վեհազնոյն ի տես արքային.
« Հայկեան փառացն ախոյեա՛նք ,
Ողջո՛յն ընդ ձեզ, իմ կորի՛ւնք,
Ընդ ձեզ, քա՛ջք իմ, եկից
Գոռոզին Սասանեան
Առնել ըզգան բոցակէզ.
Յաղթութիւն ճախրէ զմեօք.
Պճնեսցին սուսերք մեր
Բոսորակայլակ ճապաղեօք.
Հալածեսցին պիղծ մոխրաշունչք.
Ո՛հ, իմ պայծառ փայլէ ճակատ,
Տեսէ՛ք. յեռանդ ձեր ապաժոյժ.
Ո՛հ իմ պայծառ փայլէ ճակատ
Ի չոգիւն յաղթանակաց պերճ ։
Եւ ոչ ի ծագս աշխարհի
Կացցեն անահ թշնամիք ։ »

---

կալի. արձագանքներն արթնցան գղրգալով. Խաւարով արքան նայելով կը ճեմէր կորիճներուն վաշտերը հրճուեցան՝ պատերազմի զոռ աւետիսն իմանալով. կորիճներուն վաշտերը հրճուեցան վեհազն արքան տեսնելով.

« Հայկեան փառքին ախոյեաններ, ո՛վ իմ կորիւններս ողջո՛յն ձեզի. ձեզմով, քաջե՛րս, գոռոզ Սասանեաններին զանը պիտի այրեմ մըրկեմ. յաղթութիւնը մեր վերեւը կը ճախրէ. մեր սուրերը բոսորակայլակ ճապաղիքներով պիտի զարդարուին. պիղծ մոխրապաշտները պիտի հալածին. տեսէ՛ք, ճակատս պայծառ կը փայլի ձեր ապաժոյժ եռանդովը; ո՛հ, իմ ճակատս պայծառ կը փայլի յաղթանակներու պերճ շողիւնովը ։ Աշխարհիս մինչեւ ծայրն անգամ, թշնամիներս վախ պիտի զգան ։

ԺԹ

ԵՐԳ

Անոյշ աչխոյժ կերպարան,
Շնորհաց սիրոյ բնակարան,
Բարքով հեզիկ ողաւնի,
Խօսքըն մընչիւն գեղանի.
Ո՞վ է արդեօք, թող գըրուցեն —
Նուփիմէն։

Այն երեսէն հուր ելաւ,
Այն աչքերէն նետ թըռաւ.
Ձեմ դիմանար բիւր ցաւոց.
Զանփորձ հասակս ծախէ բոց.
Ո՞վ զիս զարկաւ, թող գըրուցեն —
Նուփիմէն։

Ո՛վ երջանիկ Իւսկիւտար,
Ըզքեզ ա՛լ թող չեմ ի տար.
Ա՛յնպէս քեզի կապուեցայ,
Բաժնըւելու ճար չըկայ.
Ո՞վ զիս բըռնեց, թող գըրուցեն —
Նուփիմէն։

Ի

ԵՐԳ

Անմահ անուշ գու գինի,
Շատ սիրելի ես քաջին,
Զի գոյնդ արեան նըմանի
Պատերազմաց ի դաշտին.

*Բոսորափայլ քո փրփուր*
*Որ մեզ ի կռիւ փըչէ հուր ։*
*Թէ հաշտութիւն գայ արդար՝*
*Փոխի ի ցօղ զովարար ։*

*Դափնիք քեզմով կ՚առնեն ոյժ,*
*Կարմիր կրակո՛տ դու գինի ․*
*Քեզմով զըւարթ եւ աշխոյժ*
*Կ՚ըլլայ հեզիկ ձիթենի ․*
*Քեզմով վառի բոցագոյն*
*Օրիորդին համեստ գոյն ․*
*Կեցցե՛ն մեր քաջ պատանիք*
*Եւ Նազելի գեղանիք ։*

## ԽԱ

## ՈՂԲԵՐԳ

*Շաղ մարգարտեայ եւ զեփիւռիկ*
*Գգուեն ըզհողդ, Ցոլա՛կ, Հեզի՛կ,*
*Որորեսցեն զոգեակըս ձեր*
*Սոխակք անոյշ ի գայլայլիկ ։*

*Ուսցին մանկիկք ի գիրգ տիոց,*
*Ուսցին փափկիկ դըստերք Հայոց*
*Երգ մի տըխուր թոթով ի բան,*
*Ձօնել ընծայ շիրմաց ձերոց ։*

---

## ՈՂԲԵՐԳ

*Մարգրտէ շաղն ու զեփիւռիկը թող ձեր հողը գգուեն, Ծոլա՛կ, Հեզի՛կ ․ սոխակներն անուշ դայլայլներով թող ձեր ոգեակն օրօրեն ։*

*Թող սորվին դեռատի մանկիկները, թող սորվին Հայոց փափկիկ աղջիկները՝ երգ մը տխուր, թոթովելով երգուած, ու զայն ձեր շիրիմներուն ընծայ ձօնեն ։*

Ձեռն ի ձեռին շուրջ պարաւոր
Գայցեն փոքրիկ հրեշտակք բոլոր,
Վարդըս կարմիր գայցեն ոփաել
Ցերկնից դրախտէն փընջից յոլոր ։

Անդ կիպարոյն ի յոտ ցամաք
Կախեմ ըղքնարս ողբանըւագ ․
Ի չունչ հողմոյն թող մրմնջէ՝
« Ձեզ քունդ անո՛յշ, Հեղի՛կ, Ծոլա՛կ ։ »

## ԻԲ

## ՀԱՆԵԼՈՒԿ

Ո՞վ է որ կ'ուզես զիս ճանչնալ ,
Վերարկուէս մի՛ խաբուիր ․
Իմ մականունս չունեցող
Պըտուղք համով չեն ուտուիր ․
Տաճկերէն ինչ ըսել եմ
Ջանա՛ աղէկ գիտնալու ,
Առանց անոր կարկանդակ
Դուն չես կրնար ուտելու ․
Երկրորդն յեօթանց բանաւոր
Տիրէ սրտի իմ վըրայ ,
Ու ես անոր զօրութեամբն
Մատենագիր մը եղայ ․
Իմ անունըս իմաստունք

---

Ձեռք ձեռքի թող շուրջերնիդ պար բռնած, թող գան բոլոր փոքրիկ հրեշտակները , թող գան երկնքի դրախտէն կարմիր վարդեր փունջ փունջ ոփաել ։

Հոն՝ նոճիին չոր ոտոն ի վար կը կախեմ քնարս ողբանուագ ․ թող մրմնջէ ի չունչ հովին ․ « Քուներնիդ անո՛ւշ , Հեղի՛կ, Ծոլա՛կ ։ »

Ցիչեն արդար բարկութեամբ ,
Սարկաւագունք երդելով ,
Ծըգէտք՝ անմիտ յարգութեամբ ·
Անուանով մեծ ճգնաւոր
Ու եւ հովիւ պաշտօնով ·
Գործքով գիտնաս ինչ ըլլալս ,
Պիտի դողաս սարսափով ։

## ԻԴ

## ՄԽԻԹԱՐԵԱՆ ԱՇԱԿԵՐՏԱՑ ԱՌ ՄԻՔԱՅԷԼ ՎԱՐԴԱՊԵՏ ՇԷՔԵԱՆ ԲՈՂՈՔ

Մխիթարեա՛նց եմք աշակերտ ,
Վարժեալք նոցուն ի դաստակերտ ·
Զի՞ զմեզ առնես արդ դատափետ,
Է՛ Շէքեան դու վարդապետ ։
Թէ ոչ վաստակ նոցին գրչաց
Կոփէր զանհարթ միտս հայազգեաց ,
Էիք արդ դու եւ Պօրճօնեան
Բեռին բարձողք ի Նաւարան ։
Անչուք ծնողաց ի խոր խաւար
Տըգիտութեան՝ իմաստիւք վառ
Փայլեն որդիքն ի դարուց դարս ,
Իբրու զվարսամ՝ յաստեղաց պարս ։

---

### ՄԽԻԹԱՐԵԱՆ ԱՇԱԿԵՐՏԱՑ ԲՈՂՈՔԸ ՇԷՔԵԱՆ ՄԻՔԱՅԷԼ ՎԱՐԴԱՊԵՏԻՆ

Մխիթարեանց աշակերտ ենք մենք՝ անոնց ձեռքովը կրթուած · ինչո՞ւ մեզ կը դատափետես , է՛ Շէքեան վարդապետ ։

Եթէ անոնց գրիչներուն աշխատանքը Հայոց անհարթ միտքը կոփած չըլլար , դուն ու Պօրճօնեանը հիմա Նաւարանին մէջ բեռնակիր եղած կ'ըլլայիք ։

Անչուք ծնողքներու տգիտութեան խոր խաւարին մէջ որդիները դարէ դար կը փայլին վառ մտածումներով, ինչպէս վարսամներ աստղերու պարին մէջ ։

Դաստիարակ հանուրց ազգիս
Զոսա միայն գիտեմք յատուկ.
Ինչպէ՛ս զուգել նոցին փայլման,
Նըսեմաստուեր զու է՛ Շէքեան։
Անիծակուռ անկցին յերկիր
Որք չար խօսին անկարեկիր,
Թող կայենի առցեն բաժին.
Եղբայրատեացք ի հուր մաշի՛ն։
Ցորչափ շընչեմք զօդ ի ռընգունս,
Խաղայ արիւն մեր յերակունս,
Եւ ցորչափ զայս երգէ Պըւէտ,
Մըխիթարեանք կեցցե՛ն յաւէտ։

ԻԴ

## ԳՆԱՑԷՔ. ԻՄ ՏԱՂՔ

Գնացէ՛ք, իմ տաղք, ոչ թէ յեթեր
Ուր շող եւ փայլ եւ հով ժպտին,
Եւ ուր զուարթնոյն վարսք լուսահեր
Ծալ ծալ ի ճեմս իւր ծածանին։

---

Այս աշխարհիս վրայ միայն զանոնք գիտենք ամբողջ ազգիս դաստիարակ. զուն անոնց փայլին հաւասարի՞լ կը համարձակիս, նսեմաստուեր զու է՛ Շէքեան։

Անիծուած թող գետինն անցնին անոնք որ անարդարաբար կը չարախօսեն. թող կայենի բաժինն առնան, թող կրակի մէջ մաշին եղբայրատեացները։

Ցորչափ օդ շնչենք մեր ռունգերով ու արիւն քալէ մեր երակներուն մէջ եւ ցորչափ բանաստեղծը զայս երգէ, Մխիթարեանք ապրին յաւիտեան։

## ԳԱՑԷՔ, ԻՄ ՏԱՂԵՐՍ

Գացէ՛ք, իմ տաղերս, ոչ թէ եթերին մէջ ուր շողն ու փայլն ու հովը կը ժպտին, եւ ուր հրեշտակին լուսեղէն մազերը՝ անոր ճեմած ատենը՝ ծալ ի ծալ կը ծածանին.

Գնացէ՛ք, իմ տաղք, ոչ ի կամար
Ուր լուսափթիթ ծաղկունք երկնից
Իբր ըղդրտանդ ականց գոհար
Կախեալ ցոլան յոլորս փնջից։
Գնացէ՛ք, իմ տաղք, ոչ թէ ի ծոց
Զարմանահրաշ օրրոյ բնութեան
Որ ի յաւիտեան ի հուր 'ւ ի բոց
Վառէ, գրկէ, տածէ զհամայն.
Գնացէ՛ք, իմ տաղք, ոչ ի պարերգ
Օդաթռոիչ այն Սիլֆեանց
Որ յասպարէզ կապուտաներկ
Կայթեն հողմոյն ի սոյլ նուագաց.
Գնացէ՛ք, իմ տաղք, գնացէ՛ք առ կոյս,
Գնացէ՛ք մեղմով եւ պատկառոտ
Ծաւի աչաց նորա ի լոյս
Զըւարթացէ՛ք անձկակարօտ.
Եւ թէ անոյշ ձեզ ակնարկեաց,
Իբրեւ զերամ թռչնոց, յուշիկ
Դուք թառեցէ՛ք իւր խոպոպեաց
Վերայ, ձեռաց եւ յուս փափկիկ,
Եւ, երգս աղու յօրինելով
Ցունկըն նորա ճըռուողեցէ՛ք,

---

Գացէ՛ք, իմ տաղերս, ոչ թէ այն կամարը՝ ուր երկնքի լուսափթիթ ծաղիկները գոհարներու դրտանդի մը նման կախուած կը ցոլան ոլորուն փունջերով.
Գացէ՛ք, իմ տաղերս, ոչ թէ ծոցին մէջ բնութեան զարմանահրաշ օրրոցին, որ աւիւնով, կրակով ու բոցով ամէն բան կը վառէ, կը գրկէ, կը տածէ.
Գացէ՛ք, իմ տաղերս, ոչ թէ պարերգին մէջ այն օդաթռիչ Սիլֆիններուն որ կապուտաներկ ասպարէզին վրայ՝ հովին նուագներուն սոյլովը կը պարեն.
Գացէ՛ք, իմ տաղերս, գացէ՛ք կոյսին մօտ. գացէ՛ք մեղմիկ ու պատկառոտ՝ անոր ծաւի աչքերուն լոյսին մէջ անձկակարօտ զուարթացէ՛ք.
Եւ եթէ անուշ նայի ձեզի. թռչուններու երամի մը պէս՝ անոր խոպոպներուն, ձեռքերուն ու փափկիկ ուսին վրայ յուշիկ թառեցէ՛ք.
Եւ աղու երգեր յօրինելով անոր ականջին ճռուողեցէ՛ք, թէ՛ որ-

Թէ՛ յարթմընի թէ՛ ըզքընով
Մինչ ըզնովաւ թեւածեցէ՛ք։
Իցի՛ւ, յորժամ ոչ եւս իմ ձայն
Հասցէ առ նա եւ կամ իմ շունչ,
Ու ի մոռացօնս անկայց հաւէտյն,
Գոնեա լըսէր ըզձեր մրմունջ ։

ԻՆ

ԱՇՈԻՆ

ԵՐԳ

Ո՞ւր էք, ծաղկունք դուք փայլփըլունք,
Ո՞ւր ձեր այտեր անուշ հոտով,
Ո՞ւր ձեր պչրանք ու փափկութիւն
Եւ ծոց լըցեալ շաղ մարգարտով ։

Ինչո՞ւ հովիկ, անգո՛ւթ հովիկ
Ցուրտ համբոյրներ կուտաս ձեզի,
Մոռցա՞ւ արդեօք իւր սէր գողտրիկ
Եւ իւր գգուանք փայփայելի ։

Ո՞ւր թիթեռնիկ հոլաթեւեան,
Ձեր բաժակին հիւթոց կարօտ,
Որ գայր թերթից ձերոց գունեան
Տանել ըզբոյր հեռու եւ մօտ։

---

Թուն թէ՛ քուն եղած ատենը՝ մինչ էնոր չուրջը թեւածեցէ՛ք։
Երանի՛ թէ, երբ ձայնս կամ շունչս այլեւս պիտի չհասնի էնոր եւ ես բոլորովին մոռցուած պիտի ըլլամ, գոնէ ձեր մրմունջը լսէր։

Ա՜հ, ո՞ւր սոխակն իմ սիրակէզ
Որ տերևուց նստած ի շուք
Հալէր կարմրիկ վարդին ի սէր
Եւ կողկողէր սրտամաշուք։

Չըկա՛յ զեփիւռ, չըկա՛յ ծաղիկ.
Եւ ծաղկատարփ չըկայ թիթեռ.
Չըկա՛յ սոխակ, ո՛չ վարդենիք
Լըցեալ ցօղով մարգըրտայեա.

Սակայն կուսի՛կ մի կայ փափուկ,
Բոլոր անձէն շնչէ գարուն.
Կուսիկ որ դեռ թըւի մանուկ,
Հրեշտակ է թուխ վարս ոլորուն։

Այլ ի՞նչ պիտին ծաղկանց փունջեր
Յորժամ նորա այտերն հայիս.
Այլ ի՞նչ պիտին վարդից հոտեր
Յորժամ նորա մօտ գըտանըլիս։

Ո՛հ, մի՛ երթար դու տեսանելու
Ճերմակ շուշանն թէ յիւր ճիւղիկ
Ի՞նչպէս նազի գլուխըն աղու
Երբ հովն իրեն տայ ողջունիկ։

Տե՛ս թէ կուսին փափուկ ուլան
Վերայ ի՛նչպէս կը տատանի
Հոյլ հոպոպեօք գեղածածան
Ջքնաղ գլխիկ իւր նազելի։

Լո՛ւռ կաց, գիշերց սիրո՛ւն խօսնակ,
Լռէ՛ մէկ մ՚ալ զիւր ղայլայլիկ.
Լո՛ւռ կաց, կուսին երբ ի դաշնակ
Երթեւեկեն մանու թաթիկք։

Ո՛վ հրաշագեղ կոյս օրիորդ ,
Յիմ հայրենիս թէ դու էիր ,
Հայոց շիրմաց արտասուայորդ
Ուռենիներն թէ տեսնէիր ,

Եւ իւր վըտակն ողբանըւէր
Ի սըրբափայլ իւր հայելի
Տայր որորել այն քու պատկեր
Որ հրեշտակաց է տարփելի ,

Անընմանեակ աչերդ մեղոյշ
Նորա երկինք թէ տեսնէին ,
Ու մէկ նայեաց, նայեաց մ՚անոյշ
Արձըկէիր նորա հողին ,

Յայնժամ սոխակ շիրմացն Հայոց
Որ միշտ ողբայ հողմոց ի մռունչ ,
Գէթ մի անգամ լըռեալ ըզկոծ
Քեզ ողջունէր յուրախ մրրմունջ ։

## ԻԶ

## ԱՌ ԶԵՓԻՒՌՈՆ ԱԼԷՄՏԱՂԻԻ

### ԵՐԳ

Դու փափկաթեւ մանկիկ զեփի՛ւռ ,
Աղբերց վրայէն լուսակարկաջ ,
Անուշ հոտով ծաղկանց ըսփիւռ՝
Ի՞նչպէս թռչիս ինձ ընդ առաջ ,
Ու խունկ եւ զով ընծայելով
Զիս ողջունես հեզիկ շնչով ։
Ո՛հ, կը սիրեմ ըզքեզ, հողմի՛կ ,
Երբ դու փութաս ինծի գալու ,

Ի պար ի թռիչ ի սոյլ մեղմիկ.
Այրած ճակտիս իմ այցելու.
Ծաղիկ հոգւոյս, քեւ զովացած,
Բացուի ի լոյս անուրջ կենաց։

Սլացի՛ր, փափկիկ դու սուրհանդա՛կ.
Լո՛ւր տար հովտին ու ծործորին
Եւ անտառաց բարձրադիտակ,
Ուր երամով սոխակք թառին,
Թէ մըտերիմն իւրեանց եկաւ
Բիւր ըղմայլմանց յիշատակաւ։

Ո՛հ, կորսըւած իմ հաճոյքներ,
Հոս վերըստին գըտնեմ ըզձեզ.
Ծառոց շըքով էք ծածկըւեր
Ու փըրփըրով առուակին հեզ.
Ահա կայտռէք ի յայս ծըմակ,
Ի յայս թըփուտ հովանոցակ։

Հոս դառն հոգեր մէկիկ մէկիկ
Ճակտէս ի բաց հեռանային
Ու փունջք ժամուց գեղապարիկ
Սիրտըս թեթեւ օրօրէին,
Եւ բընութիւն՝ մայր որդեսէր՝
Քնքուշ գրկաց մէջ զիս գըգուէր։

Հոս ճեմէին երեկոյեան
Ի զով ըստուեր պար մի կուսից,
Մազերն հովուն բազմաբուրեան,
Սիրտք ընծայուած հեշտ վայելից.
Շող լուսնակին, կոյսն ու ծաղիկ
Զիրար չոյեն սիրատարփիկ։

Մըտերմութի՛ւն, Սէ՛ր կրակուբոց,
Ի՛նչ անուշ էք յայս տեսարան,

*Ուր բիւր դալարք ձեզ հանգըստոց*
*Ու՛ անհուն դաշտեր ըղձօսաբան.*
*Մըտերմութի՛ւն, ինձ երանի՛*
*Թէ հոս ծոցէդ հոգիս թռանի։*

*Դու փափկաթեւ մանկիկ զեփի՛ւռ,*
*Աղբերց վրայէն քաղցրակարկաջ,*
*Անուշ հոտով ծաղկանց ըսփիւռ՝*
*Թռի՛ր, թռի՛ր ինձ ընդ առաջ,*
*Ու խունկ եւ զով ընծայելով*
*Պարէ՛ չորս դիս հեղիկ շնչով։*

*ԻԷ*

*Մռընչեն մայրիք, հրոս տան ամպեր.*
*Նըստի Հըրանտ ի ծովեզեր,*
*Ի մռայլ գիշեր հեծէ տըխուր.*
*Կոհակք ընդ ժայռս ցայտեն փրփուր։*

ՀՐԱՆՏ

*Մեռեալ է սիրտ, թափուր՝ երկիր,*
*Հուր տենչք ի հող կան անյարիր.*

---

*ԻԷ*

*Մայրիները կը մռնչեն, ամպերը կը խռժեն. Հրանտ ծովուն եզրը նստած է, մութ գիշերին մէջ տխուր կը հեծէ. կոհակները ժայռերուն զարնուելով փրփուր կը ցայտեցնեն։*

*ՀՐԱՆՏ. — Սիրտը մեռած է, երկիրը պարապ. հրեղէն տենչերը հողին մէջ պառկած են անյարիր. կանչէ՛ զիս, մա՛յր, մեկնիմ այս-տեղէն, հեքի՛ք է. ապրեցայ ու սիրեցի.*

*Կոչե՛ս զիս, մա՛յր, մեկնիմ աստի ·*
*Շատ է · կեցի եւ սիրեցի ։*

## ՄԱՅՐ

*Ի զո՜ւր, Հրա՛նտ, արտասուես դու ·*
*Ոչ ի շիրիմ իջցես այդու ·*
*Սակայն տա՛ս, առ սիրտ ցաւած*
*Զոր սէր լըքեալ Թըռեաւ ի բաց՝*

*Միթէ գուցէ՞ դեղ կենսաբեր,*
*Իւղ անուշակ՝ հեղուլ ի վէր ·*
*Գտջի՛ր, Հըրանտ իմ գալկադէմ,*
*Ես զայն երկնից քեզ առաքեմ ։*

## ՀՐԱՆՏ

*Թէ իմ վիրաց ա՛հ ոչ գոյ ճար,*
*Մի՛ արտասուքս առցեն վըճար ·*
*Յետ երանեաց անճառ սիրոյ*
*Ինձ քաղցրագոյն են ցաւք սիրոյ ։*

---

ՄԱՅՐԸ · — Հրա՛նտ, ի զուր կ՚արտասուես · անով գերեզման չես իջներ · սակայն ըսէ՛, այն ցաւած սրտին զոր սէրը լքեց ու հեռու Թըռաւ՝ արդեօք կա՞յ դեղ մը կենսաբեր, անուշակ իւղ մը վէրքին վրայ Թափելու · ըսէ՛, ո՞վ իմ գալկադէմ Հրանտս · քեզի երկնքէն ղրկեմ զայն ։
ՀՐԱՆՏ · — ԵԹէ վէրքիս, ա՛խ, ճար չկայ, արցունքս վերջ պիտի չունենայ · անճառ սիրոյ երանութիւններէն յետոյ՝ ինծի համար քաղցրագոյն բանը սիրոյ ցաւերն է ։

ԻԸ

## ԵՐԳ

ՅԱլէմտաղըն այն գեղեցիկ
　　Գացի ժուռ գալ անհոգ մոլար,
　　Ուր բիւր վըտակ բիւրեղ ծոցին
　　Մատուցանեն անկոց ղալար։
Երբ փայլփըլուն ծագէ արեւ,
　　Ոսկի ցանուի լերանց վերայ,
　　Շող արձըկէ ամեն տերեւ,
　　Զեփիւռ թփոց հետ կը խաղայ.
Բայց քան զամեն հովիկ քնքուշ
　　Հրեշտակ մի անդ կը թեւածէր,
　　Ու քան զամեն երգերն անուշ
　　Այն նազելուոյն ձայնիկն հնչէր։
Թըռի՛ր ինծի, ահա մըտայլ
　　Անտառին մէջ իջաւ գիշեր.
　　Կանչէ պըլպուլ լուսնին ի փայլ.
　　Բաց անոնցմէ չունինք ընկեր։
Սա հովանիքն անուշաբոյր
　　Տեսնեն ըղձեղ թեւ ընդ թեւով
　　Ասդիս ծաղիկ անդին համբոյր
　　Փունջ փունջ սիրոյ ընծայելով։
Պարանոցիս մարգրիտ մանեակ
　　Կախէ՛ սպիտակ քուկին թեւեր,
　　Մազերդ գըլխիս իմ հովանեակ,
　　Ու լուռ մընջիկ սահին ժամեր։
Երբ բընութիւն անխօս կենայ,
　　Մանկանացուք ձայն չեն հաներ.

Լաւ է ամեն ինչ որ չուրջ կայ,
Աւելի տա՛ք խօսին սրտեր ։
Տուշանափայլ բարձ մի փափկիկ
Ըլլայ քու ծոցդ ինձ առ ի քուն ․
Բայց թէ այն սէրդ է խաբուսիկ,
Լաւ է չտեսնամ ըզլոյս արտուն ։

## ԻԹ

## ԵՐԳ

Ո՞ւր էր թէ զեփիւռիկ
Ըլլայի թափառիկ ․
Ոսկեթել մազերուդ
Տա՛յի համբուրիկ ․
Ո՞ւր էր թէ վարդ գոհար
Ըլլայի վառ ի վառ ․
Ընտրէի ինձ բազմոց
Կուրծքըդ ձիւնափայլ ․
Ո՞ւր էր թէ քանարիկ
Ըլլայի ես թռչնիկ ․
Թռչել գալ ու չոյել
Դէմքըդ գեղեցիկ ․
Կա՛մ երազ խուճափուկ
Որ գայի մինակուկ
Քունիդ մէջ խըռովել
Քու միրտըդ փափուկ ։
Ի՞նչ ըրի ես քեզի
Որ ցաւոց այդպիսի
Եւ անբոյժ հարուածոց
Ըլլամ արժանի ։
Հրեշտակ էր թըռաւ ,
Երազ էր որ անցաւ,
Այդ քու սէրըդ փափուկ
Տուտով թոռմեցաւ ։

Ըղձախնդիր նորա տեսից զկերպարանըս վեհափառ ։
Բացա՛ւ, ո՜հ ... վերացա՛ւ ... լըցան սըրտիս տենչ եւ անձուկք ։
Ո՜վ անցելոյն անեղահրաշ տեսիլ ծաւալ իշխանութեան ։
Անպարագիծ ովկիան, յար ալեատանջ 'ւ անդնդախոր ։
Յորձնեռանդըն պըտոյտքեալ սուրայ վազիւք արշաւասոյն՝
Ի վիհ ինչ անյատակ յահեղ կարկաջ չառաչելով ։
Դարք վաթսուն կոհակաւէտ ի յուս նորա գընան թաւալ ։
Ամպրոպաձայն փոթորիկ կայծակնացայտ հոլաթեւօք ։
Մըղէ անդուլ ըզնոսա յուղի անդարձ ճեպեցուցեալ ։
Մինթէ չո՞ւնչ անմահական իցէ արդեօք նա Բարձրելոյն ։
Անդ վեհավայր շէնք եւ քաղաքք, հըզօր եւ պերճ արքայութիւնք
Մի ըզմիով թաւալագլոր հարեալք փըշրին կուռ դըղըրդմամբ ։
Եւ այն գոչիւն կականաւոր յանդնդային ելեալ վըհէն
Մըռընչիւնք են սոսկալի ազգաց յախուռըն վարելոց ։
Անա՛ եւ իմ հայրենիք եւ դիւցազունք գուպարայաղթ,
Անա՛ գոռոզըն եւ ահագին Տիգրանակերտ, Վաղարշապատ,
Անա՛ հըսկայ ըն Հայկազունք՝ Հայկ եւ Արամ, Տիգրան, Վահագն,
Անա՛ եւ քաջք Պարթեւազունք՝ Արշակ, Խոսրով, գոռն Արտաշէս ։
Երագաթռիչ ալեացն ի թեւս եւ նոքին ո՜հ վարեալ յապշոպ

---

կարօտակէզ իղձ մ'ինկաւ հայրենիքս տեսնելու ։ կ'ուզեմ անոր նախկին վեհափառ կերպարանքը տեսնել ։

Բացուեցաւ վարագոյրը ... սրտիս տենչն ու անձուկը կատարուեցաւ ։ Ո՜վ անցեալին մեծածաւալ իշխանութեան անեղահրաշ տեսարան ։ անպարագիծ ովկիան մը՝ միշտ ալեատանջ ու անդնդախոր ։ յորձնեռանդն պտուտքելով արշաւագին կը սուրայ, ահեղ կարկաջմամբ դէպ ի անյատակ վիհ մը չառաչելով ։ վաթսուն դարեր անոր կոհակաւէտ ուսին վրայէն կը թաւալին կ'անցնին ։ ամպրոպաձայն փոթորիկ մը կայծակնացայտ լայն թեւերով՝ զանոնք կը մղէ անդադար, դէպ ի անդարձ ուղի մը շտապեցնելով ։ արդեօք Բարձրեալին անմահ շո՞ւնչն է ան ։ հոն, վեհավայր շէնքեր ու հզօր քաղաքներ ու պերճ թագաւորութիւններ՝ իրարու վրայ թաւալագլոր՝ կուռ դղրդմամբ իրարու կը զարնուին ու կը փշրին ։ եւ անդնդային վիհէն ելած կականաւոր այդ գոչիւնը՝ սոսկալի մռնչիւնն է ընդ քարշ տարուած ազգերուն ։ Անա՛ իմ հայրենիքս ալ ու իր քաջայաղթ դիւցազները ։ անա՛ գոռոզ եւ ահագին Տիգրանակերտն ու Վաղարշապատը, անա՛ հսկայ Հայկազուննե-րը՝ Հայկ եւ Արամ, Տիգրան, Վահագն, անա՛ եւ քաջ Պարթեւազուննե-

Սլանան շոյտ եւ նուաղեալ լինին յաչացս աներեւոյթ․
Ո՞ւր փախչիք, ո՛վ դուք պարծանք եւ փառք յաւէժ Հայաստանեայց,
Ո՞ւր ըղձէք հայրենիս թողուք այսպէս վատաբախտիկ։
Ամենակալ Տէր, աստուածեան այլ իմըն չունիչ յղեա՛՝ մաղթեմ․
Ցետս ընդ կրունկըն դիմեսցէ յափըշտակիչ այս ովկիան,
Սրփոեալ յերկիր զիմ դիւցազունս, ըզդաստակերտըն հոյակապ,
Ըզփառսըն հայրենի նորոգ այսրէն դարձուցանել։
Ընդունա՛յն աղերս, եւ իմ ամբոխեալ միտք բանդագուշե՛ն․
Ի ձեզ, աստղո՛ւնք, աստղո՛ւնք Հայոց, վերամբառնամ զաչս իմ անդրէն՝
Զայսօսիկ ողոքաւոր հեզլով մաղթանս կողկողագին․
Զա՛հք մըշտավառք՝ լուսատու լերո՛ւք երկրին ձեր պանծալի,
Փայլեսցէ անաղօտ ընդ ձեր լուսոյ եւ փառք նորին․
Բոցատիպ նըշոյլ եւ շաղ հեղէ՛ք առէն քաղցրածաւալ,
Մի՛ յանլոյս ի գիշեր ծածկեալ երբեք խարխափեսցի․
Տեղացէ՛ք հուր ի յերկնից սրբաբորբոք վառարանէն․
Ցարիցե՛ն ժառանգաւորք ի ջերմ մոխրոց հին դիւցազանց,
Նոր կենդանութիւն շնորհել Ազգիս եւ Հայրենեաց։

---

ըր՝ Արշակ, Խոսրով, գոռ Արտաշէսը, արագաթռիչ ալիքներուն թեւերուն վրայ անոնք ալ խառնաշփոթ քշուած, շուտ կը սլանան ու կը նուաղին կ'աներեւութանան աչքէս։ Ո՞ւր կը փախչիք, ո՛վ դուք՝ Հայոց յաւիտենական փառքն ու պարծանքը, ո՞ւր կը թողուք ձեր խեղճ հայրենիքը՝ այսպէս դժբաղդ։

Ամենակալ Տէ՛ր, աստուածային ուրիշ չունիմ մը հանէ՛, կ'աղաչեմ, որպէս զի այս յափշտակիչ ովկիանը ետ քաշուի, գետինը փռուած իմ դիւցազներս ու հոյակապ դաստակերտներն ու հայրենի բոլոր փառքը նորէն մեզի դառնան։

Ունա՛յն աղաչանք․ յուզուած միտքս կը բանդագուշէ՛։ Դէպ ի ձեզ, աստղե՛ր, Հայոց աստղե՛ր, աչքերս դարձեալ կը վերամբառնամ, սա ողոքաւոր կողկողագին մաղթանքը թափելով․ « Մշտավառ ջահեր, լուսաւորեցէ՛ք ձեր պանծալի երկիրը․ ձեր լոյսին հետ անոր փառքն ալ անաղօտ թող փայլի․ բոցատիպ նշոյլ ու շաղ հոսեցէ՛ք հոն քաղցրածաւալ․ թող անլոյս գիշերի մէջ ծածկուած չխարխափէ․ երկնքին սրբաբորբոք վառարանէն կրակ տեղացէ՛ք․ հին դիւցազներու տաք մոխիրներէն ժառանգաւորներ թող ելլեն, մեր ազգին ու հայրենիքին նոր կենդանութիւն շնորհելու։

## ԼԷ

## ԵՐԳ

## ԶԲՕՍԱՆՔ ԱՐՏԱՇԷՍԻ ԱՌԱՋՆՈՑ

« Ելէ՛ք ի դաշտ, սէ՛գ իմ կորիւնք, զառայթ տա՛ւք խաղից յասպարէզ
Գոռ հըսկայից գոչէր հրաւէր հըսկայազօրն Արտաշէս։
Ելին վաշտք վաշտք քաջաց ձայնին ըղհետ աշխարհաւեր,
Վառեալք ի բոցափայլ պըղըընձակուռ յասպար ի զրահ
Այլ զի՞ այդչափ խուռն ամբոխ հուր ի գայրոյթ բորբոքելոց
Եւ չըռինդն յուզեալ սաստիկ իբր ըղճայթմունքս ամպրոպաց,
Զի՞ այդչափ զափր ի կեռին դրընդիւն յոխորտ երիվարաց։
Կամիցի՞ն պեղել ըղհող եւ մարտ դընել ընդ անդընդոց·
Ո՞ր ըղվրէժ լուծցեն այս քաջք, կամ յո՞ր վըտանգըս դիմագրաւք,
Նազեացին պար առեալ ի ճաճանչի յաղթանակաց.
Միթէ զերկիրն ի հիմանցն յաւիտենից քայքայեսցե՞ն
Կամ ծովուն ընդդէմ ցասման անհեղախորոխ բերցեն պայքար։
Ըղբօսանք Արտաշէսի ընդ աշխարհիս եւ ընդ ազգաց։ —
Ինքն ի կառըս վերելեալ, սանձն ի ձեռին ձիոց վեցից,

---

## ԱՐՏԱՇԷՍ ԱՌԱՋԻՆԻ ԶԲՕՍԱՆՔԸ

« Դա՛շտ ելէք, իմ սէգ կորիւննե՛րս, խաղերու ասպարէզին մէջ խուժեցէ՛ք» · գոռ հսկաներուն այսպէս հրաւէր կը կարդար հսկայազօր Արտաշէսը · վաշտ վաշտ քաջեր աշխարհաւեր ձայնին ետեւէն վազեցին, բոցափայլ պղնձակուռ ասպարներով ու զրահներով զինավառ · բայց ինչո՞ւ այդքան խուռն ամբոխ մը գայրոյթի հուրով բորբոքուած մարդոց, եւ ինչո՞ւ այդ չռինդը սաստկայոյզ՝ ամպրոպներու ճայթմունքին նման. ինչո՞ւ յոխորտ երիվարներն այդպէս դոփելով գետինը կը թնդացնեն. հողը փորել ու անդունդին հետ մարտնչի՞լ կ'ուզեն · ի՞նչ վրէժ է որ պիտի լուծեն այս քաջերը, կամ ի՞նչ վըտանգներու դիմագրաւելով՝ յաղթանակի ճաճանչներու՛ն մէջ պար բռնած պիտի նազեն · միթէ երկիրը պիտի քակե՞ն իր յաւիտենական հիմունքէն, կամ ծովուն ցասումին դէմ անհեղախորոխ պայքա՞ր մը պիտի մղեն ։

Արտաշէսի զբօսա՛նքն է աշխարհի եւ ազգերու հետ ։

Արշաւէր նախընթացիկ մեղմ ի ժըպիտ եւ զուարթաղէմ.
Մերթ ի ճախր ըղձիս ածէր եւ մերթ հեզիկ յաշխոյժ ի պար,
Որպէս կայծակն ի մէջ ամպոց այնպէս անուոցն որոտալով.
Մերթ առ խուրըն դարձ ընդ կրունկըն հրամայէր զոյգըն պատուէր
Ցարուցանել յանկարծօրէն կարկառակոյտ լեառըն վիմարդ
Կամ նետիցըն տարափով քօղ արկանել զարեգակամբ
Եւ խաղ առնել ըղնովաւ եւ վըրոցակէզ ճառաչայթիւքն։
Տեսին ազգք դիզացեալ փոշի յերկինս որպէս ըղծուխ,
Այն էր նըշան զուժարեր պերճըն ձեմոց Արտաշէսի.
Անշընչացան ի զոփալոյն՝ զօրհասական տեսեալ ըղժամ։
Անցանէր Արտաշէս, տապալէին բարձրապարիսպք,
Անցանէր մըրըրկաբար, զաշտանայեն ի դիւր քաղաքք,
Անցանէր եւ ընդ քարշ ձըգէր զարքայս եւ զժողովուրդս.
Եւ ընդ քեզ ընդ վայրենուոյդ խաղաց, ո՛ ծով, եւ ըղբօսաւ.
Իբրու զազան չըղթայակապ ի զուր մոլեալ մըռընչեցիր.
Ցիւր երկիր տեղափոխեաց ըղդիւցընկէց վեհից կայանս։
Զերթ հըսկայ Ոգի յաղթող՝ թեւատարած ճախրեաց ի վեր,
Կալաւ զաշխարհ ի ձեռին որպէս մանկունք զընտակ ի խաղ.
Խաղաց նովաւ եւ ըղբօսաւ, այն էր իւր խաղ արքայական։

---

Ինքը կառքին վրայ բարձրացած, վեց ձիերու սանձը ձեռքը, յառաջընթաց կ'արշաւէր մեղմաժպիտ ու զուարթադէմ. մերթ ձիերը ճախրագին կը վազցնէր ու մերթ հեզիկ աշխոյժ գնացքով. ինչպէս կայծակն ամպերուն մէջէն, այնպէս անիւները կ'որոտային. ետին դառնալով իր մարդոցը կը հրամայէր քարերով յանկարծ կանգնել լեռ մը կարկառակոյտ կամ նետերու տարափով արեւուն վրայ քօղ ձգել եւ խաղալ անով ու իր բոցակէզ ճառագայթներովը։ Ազգերը տեսան փոշին մուխի պէս դէպ ի երկինք դիզացած առի գուժարեր նշանն էր Արտաշէսի պերճ ձեմքին. օրհասի ժամին մօտիկը տեսնելով զողդղալէն անշնչացան։ Կ'անցնէր Արտաշէս, ու բարձր պարիսպները կը տապալէին. կ'անցնէր մրրիկի պէս ու քաղաքները դաշտ կը դառնային. կ'անցնէր ու իր ետեւէն կը քաշկռտէր թագաւորներ ու ժողովուրդներ. ու քեզի հետ իսկ, վայրենի՛ ծով, խաղաց ու զբօսնեցաւ. շղթայակապ գազանի պէս՝ ի զուր կատղած մռնչեցիր. վեհ դիքերու կայաններն իր երկիրը տեղափոխեց. իբրեւ հսկայ յաղթական ոգի մը թեւատարած դէպ ի վեր ճախրեց, աշխարհը ձեռքին մէջ բռնեց ինչպէս մանուկ մ'իր խաղի գնտակը, խաղաց անով եւ զբօսնեցաւ, այդ իր խաղն էր արքայական։

Շատ է արդ, Արտաշէ՛ս. աստուածացիր եւ դու Հըզօրդ.
Դարձի՛ր ի զբօսանացդ... այլ ընդէ՞ր սուրք փայլատակեն.
Ջերթ Ովկիան ալեաանջ ինքն ընդ անձին իւր ոգորի.
Հի՞մ փոթորկեալ գետայ խուժան եւ յո՞ սուրայ Արտաշէս,
Զի՞նչ այն աղմուկ խառնագոչ.... ո՛չ մի շըշունչ... լռութի՛ւն մահու.
Դիակնացաւ աշխարհակոյտ, տեսէ՛ք, բանակն յաղթողական.
Տեսէ՛ք՝ կողք քաջազանցն են ապաժոյժ աղբերք արեանց.
Գործի փառացն Հըզօրին իւր արեւուն ած բստուերած:
Ո՛վ Մեծդ, ըղձոյդ յետին վըսեմութեան բարբառ շրթանց,
Առ ի խրատ աշխարհիս՝ որ ի յաջոյդ սարսեալ դողայ,
Քանդակեցից շիրմիդ վերայ. «Աւա՜ղ փառացս անցաւորի:»

## ԼԸ

## ԾԵՐՆ ՎԱՆԱՑ

### ԵՐԳ

Մո՛ւթ է գիշերս, ինչպէս սիրտս ալ.
Եւ թուխ ալիք մշտափրփուր
Վանայ ծովուն ծիածաւալ
Հառաչանօք լի են տըխուր:

---

Ա՛լ հերիք է, Արտաշէ՛ս. դուն ալ, ո՛վ հզօր, պիտի աստուածանաս. մահկանացուները զոր ոտքերուդ տակ կոխկրտեցիր, քեզ պիտի պաշտեն. ա՛լ դարձի՛ր զբօսանքէդ... բայց ինչո՞ւ սուրերը կը փայլատակեն. ինչպէս ովկիանն ալեաանջ, ինքն իր անձին հետ կ'ոգորի. ինչո՞ւ փոթորկած կ'եռայ խուժանը, եւ ո՞ւր կը սուրայ Արտաշէս. ի՞նչ է այն խառնագոչ աղմուկը... ո՛չ մէկ շշունչ... մահու լռութի՜ւն. տեսէ՛ք, դիակնացաւ աշխարհակոյտ բանակը յաղթողական. տեսէ՛ք՝ քաջերուն կողերէն արիւնի աղբիւրներ յորդ կը վազեն. Հզօրին փառքի գործիքը իր արեւուն վրայ ստուեր քաշեց:

Ո՛վ Մեծ, շրթներուդ վերջին վսեմ խօսքը, երբ խրատ աշխարհիս՝ որ քու աջէդ սարսեցաւ, շիրմիդ վրայ պիտի քանդակեմ՝ «Աւաղ փառացս անցաւորի:»

Գոց են ամպով աստղունք․․ եւ յոյս.
Դեռ շատ հեռու է արշալոյս։

Ո՛վ նազուհի դուստր իմ Մհեկ,
Շուշա՛ն եւ վարդ դաշտացս մերոց,
Եկո՛ւ, եւ հօրդ ծերուկ ու հէք
Առաջնորդէ՛ ի Ձորն Հայոց։
Գոց են ամպով աստղունք․․․ եւ յոյս․
Դեռ շատ հեռու է արշալոյս։

Քու սիրատարփ կորիճ Արտակ
Տրխուր երգեց, ո՛հ, այս գիշեր․
Սէրն էր երգոց իւր նրպատակ,
Բայց Թորգոմայ զաղէտն յիշէր․
Գոց են ամպով աստղունք․․․ եւ յոյս․
Դեռ շատ հեռու է արշալոյս։

« Ո՛հ, ինչուան ե՞րբ հաճոյք եւ սէր
Առանց սուգի պիտի չըլլան․ »
Այսպէս ի քնարն իւր նա երգէր,
Ու արցունքով աչք մեր լըցան․
Գոց են ամպով աստղունք․․․ եւ յոյս․
Դեռ շատ հեռու է արշալոյս։

Հաս են շրիմք մեր նախահարց,
Նոճ մի ունի ամէն դամբան․
Երբ փոթորիկ գոռայ յանկարծ,
Հեծե՛ն ննջող ոգւոց փոխան․
Գոց են ամպով աստղունք․․․ եւ յոյս․
Դեռ շատ հեռու է արշալոյս։

Հին են ցաւերս, հեծեմ եւ ես․
Ժամ է իջնամ ի գերեզման,
Երթամ վեհից Հայոցն ի տես,
Վանայ կոհակք թող զիս ողբան։
Եւ դու Մհեկ, կուլա՞ս անյոյս․
Ո՛հ, ո՛չ․ գրնա՛․․․ գայ արշալոյս։

## ԼԹ

### ՔՆԱՐ ԵՒ ՇԻՐԻՄ

Որպէս եւ սիրտ իմ փշրեցաւ, եւ դո՛ւ, Քընա՛ր, բեկցիս ջախջախ.
Շատ իսկ ի յողբս ու ի թախիծ վաստակեցաք ի միասին.
Հանգոյն կողերց ուռենեաց թելքդ արտասուաց լըցան ցօղով.
Զեղերերգ ցաւոց միայն գտեալ առ քեզ յարմարադէպ,
Ողորմ մահուան իմ սիրելեաց գնացեր յաճախ յուղարկաւոր,
Եւ կոծակից լեալ սոխակին, հողմոց ի սօյլ ցրտաշունչ,
Առ սընարըս նոցին շիրմաց դու ընդ լուսնին ցանգ հեկեցեր.
Յետ անուշիկ ձայնին մօր առ մանկութեանն իմ օրրանաւ,
Որ ըզմանկիկ հոգեակն իմ գրգէր ի ծոց սիրոյն անճառ,
Որպէս աղու աղաւնեակ գգուէ ըզձագ իւր նորաբոյս,
Ի հըմայս մայրենի անհուն գըթոյն զիս վարժելով
Թեւածել անփորձ կենաց ի ծաղկաւէտն ի գրգարան,
Ա՛հ, է՞ր ոչ այլ ձայն քաղցրութեան ինձ հրաւիրակ չեղեւ խնդի.
Է՞ր եւ դու, Քընա՛րդ իմ, ո՛չ պըսակեցար յոլորս վարդից.

---

### ՔՆԱՐ ԵՒ ՇԻՐԻՄ

Ինչպէս որ սիրտս փշրուեցաւ, դուն ալ, ո՛վ Քնար, պէտք է կոտըրտիս. Հերիք է որքան մէկտեղ յոգնեցանք ողբերու եւ տխրութեան մէջ. ուռենիի ոստերու պէս՝ թելերդ արցունքի ցօղով լեցուեցան. ցաւերու եղերերգը միայն քեզի յարմար գտնելով, սիրելիներուս ողորմ մահուանը յուղարկաւոր գացիր յաճախ, եւ հովերուն ցրտաշունչ սօյլավը՝ սոխակին կոծակից ըլլալով. անոնց շիրիմներուն սնարը դուն լուսնին հետ միշտ հեկեցիր.

Մօրս անուշիկ ձայնէն յետոյ՝ իմ մանկական օրօրանիս մօտ, որ անճառ սիրոյն ծոցին մէջ կը գգուէր իմ մատաղ հոգիս՝ ինչպէս աղու աղաւնեակ մ'իր նորաբոյս ձագերը կը շոյէ, մայրենի անհուն գութին հմայքովը՝ անփորձ կեանքի ծաղկաւէտ գրգարանին մէջ թեւածելու զիս վարժեցնելով, ա՛հ, ինչո՞ւ ուրիշ քաղցր ձայն մը ուրախութեան հրաւիրակ չեղաւ ինծի. ինչո՞ւ դուն ալ, ո՛վ իմ Քնարս, վարդե-

Ցակումբ պալու գեղեցկահոյլ ուր զուարթութիւն խայտայ ի թինդ
Եւ հոյզ ծաղկանց փրփրադէզ մատռուակէ քաղցր օշարակ.
Դու ոչ ընկեր հաճիս լինել այն հրճուանաց անապակին,
Ոչ երգաբան մինչեւ յորդոր օրիորդաց ի պըսակին ,
Որք ի խորան մատչին սիրոյ կապտեալ ըղթերթըս վարդենեաց.
Ձա՞յն խորհիցիս թէ զերդ ծաղկունս են վաղանցուկք հարսունք սիրոյ.
Ի խրախճանս իսկ մըտերմաց եւ ի կայտառ փափկիկ ոտից,
Ընդ որպիսո՞ւմ դու սեաւ ոգւոյ լինիս արդեօք գաղտ խօսակից.
Զի յանկարծ նըսեմաստուեր թըւիս փոխեալ յանտառ նոճեաց,
Հեռի ի ծաղկոցաց ուր կոյսք ճեմեն 'ւ անբիծ տատրակք,
Հեռի յամենայնէ որ չնչէն սուգ երանութեան ,
Եւ մօտ միայն ուր բու ի լուռ հեծէ կեղերջ մահաշըշուկ ։

Ի սառնասոյղ վերայ լերանց 'ւ ի ծաղկածիր դաշտըս Հայոց
Քանի՞ցս անմոյժ թռուցեալ թեւօք՝ գորովաղէտ դու զուսա՛ն,
Երգս հայրենիս փորձեցեր. քեզ ըղձարձուած տուուն աւերք ,
Եւ չիրիմք նոճեպարփակ տխրահնչակ կրկնեցին վանգ ։ —

Քընա՛ր, քո մի՛ անգամ եւեթ դադարեցին արտասուաց չիթք.
Եւ կոյս մատամբ Ցոյս ըզտըխուր պատառէր քօղ ըղձակատուգ,

---

բու ոլորքներով չպսակուեցար . գեղեցկահոյլ պարախումբերուն մէջ, ուր զուարթութիւնը թնդագին կը խայտայ, եւ ծաղիկներու հոյզը փրփրադէզ քաղցր օշարակ մը կը մատռուակէ . դուն չես հաճիր մասնակցիլ այդ անապակ հրճուանքներուն , ոչ ալ յորդոր երգ մը կը մինչեւ օրիորդներու պսակին , որոնք վարդի թերթեր փետտելով սիրոյ խորանին կը մօտենան . արդեօք կը խորհիս թէ սիրոյ հարսերն ալ ծաղիկներու պէս վաղանցո՞ւկ են ։ Մտերմական խրախճանքներու մէջ իսկ՝ երբ փափկիկ ոտքերը կը կայտռեն , ի՞նչպիսի սեւ ոգիի մը հետ դուն արդեօք գաղտուկ կը խօսակցիս . վասնզի յանկարծ նոճիներու նսեմաստուեր անտառ մը փոխադրուած կը թուիս , հեռու ծաղկանոցներէն ուր կը ճեմեն կոյսերն ու անբիծ տատրակները, հեռու ամէն բանէ որ երանութեան սիւգը կը շնչէ, եւ մօտ միայն այն վայրերուն ուր լռութեան մէջ բուն իր մահաշշուկ ողբը կը հեծէ ։

Հայոց սառնասոյղ լեռներուն եւ ծաղկածիր դաշտերուն վրայ , քանի՜ցս անմոյժ թեւով թռչելով , գորովաղէտ դուն զուսա՛ն, հայրենի երգեր փորձեցիր . քեզի պատասխան տուին աւերակները , եւ նոճեպարփակ շիրիմները տխրահունչ վանկ մը կրկնեցին ։

*Մինչ Սէր ոսկի իւր թեւօք պարայածիկ նկեալ ըղձեւ*
*Շարժէր զլարսդ յաղեբախ յերգս ի մրմունջ սրտահաճոյ*
*Առ մեղուշըն Նազենիկ առ աչագեղըն կոյս քնքոյշ․*
*Յայնժամ զիա՛րդ ի ծոցոյդ ծաւալեցան դաշնակութիւնք*
*Մշտահոսան իբր յաղբերէ յիմ սիրտ ցամաք եւ ծարաւուտ․*
*Զի՛ զեղեցիկ կոյսն էր ամբիծ եւ փարելի հոգւոյս իմոյ․*
*Այլ աւա՛ղ ի բարձրաղէտ ի դարեւանդ Եղեմական*
*Տնկեալ էր նա վարդ անմահից, զուր կաթոգին հրեշտակաց*
*Խնամածուք նըմին ի լոյս ի ցօղ աստեղց սընանելում։*
*Իմ յոյժ նրբին էին թեւք եւ բիւր տենչանք վառեալ ի ծոց․*
*Ուստի զայս առ ստորեաւ ոգեմ ուղերձ սիրատարփիկ․*
*« Զի՛ խանդակաթ ես, օրիո՛րդ․ դուստրըդ սիրոյ եւ փափկութեան,*
*Զի՛ տարփալի իցեն երկինք 'ւ աստղունք թէ քո պէս ծիծաղին*
*Եւ հրեշտակք արքայութեան թէ քո նըման իցեն փափկիկք․*
*Ո՛հ, ե՛կ թըռի՛ր առ իս, Քո՛յր իմ, եւ յանապատ սրտի իմոյ*
*Դու փթթեսցիս անուշաբոյր, եւ զերդ պիւլպիւլ դիւրագորով*
*Անդ մընչեսցէ սէր քոյին երջանկութեան ընծայաբեր․*
*Եւ թէ ի քոյդ ի փափկալուր առ իս ի ձայն բարեբաստիկ*

---

*Միակ անգամ մը, ո՛վ Քնար, քու արցունքիդ չիթերը դադրեցան, եւ Յոյսը կոյս մատներով ճակտիդ տխուր քօղը պատռեց, մինչ Սէրն իր ոսկի թեւերով չուրջդ յածելով, յարերդ կը շարժէր աղեբախ ու անոնց մէջ երգեր, սրտահաճոյ մրմունջներ կը հանէր՝ մեղուշ Նազենիկին, քնքուշ աչագեղ կոյսին համար։ Այն ատեն ի՛նչպէս քու ծոցէդ, իբրեւ մշտահոս աղբիւրէ մը, դաշնակութիւններ ծաւալեցան ցամաք ու ծարաւ սրտիս մէջ․ ի՛նչ գեղեցիկ էր այն կոյսն ու փարելի իմ հոգւոյս․ բայց աւա՛ղ․ Եղեմական բարձրադէտ դարեւանդի մը վրայ տնկուած անմահ վարդ մըն էր էն կաթոգին դութով հրեշտակները խնամածուներն էին ևնոր որ աստղերու լոյսովն ու ցօղովը կը սնանէր․ իմ թեւերս չատ բարակ էին, ու բիւր տենչանք ծոցիս մէջ վառած․ ուստի սա սիրատարփիկ ուղերձը կ'ոգեմ հիմա․*

*« Ի՛նչ խանդակաթ ես օրիո՛րդ, դուստր սիրոյ եւ փափկութեան․ ի՛նչ տարփալի ըլլալու են երկինքն եւ աստղերը՝ եթէ քեզի պէս կը ծիծաղին, եւ արքայութեան հրեշտակները՝ եթէ փափուկ են քեզի պէս։ Ո՛հ, եկո՛ւր թռիր ինծի մօտ, ո՛վ Քոյրս, ու սրտիս անապատին մէջ անուշաբոյր պիտի փթթիս, եւ, ինչպէս պիւլպիւլ դիւրագորով, հոն պիտի մնչէ քու սիրտդ՝ երջանկութեան ընծայաբեր․ եւ եթէ ինծի ուղղած*

Ոգենորող զարթնու հոգիս 'ւ առոյգ տիոցս իմ դալար ,
Նուիրեցից քեզ ըղձալիկս երիտասարդ իմոյ կենաց․
Վասըն քո իմոյ քնարիս զուարթացին լարք տխրական
Ըղձոյդ միայն ցանկալի մրմընջելով անուն չքնաղ ։
Ո՛վ, ափսո՜ս իմ նազելիս, յորմէ հեռէ տեսի ըզքեզ ,
Երանութիւն լուսածղի բազկօք զինեւ փարեցաւ,
Ցոյժ առաւել լուսապայծառ զգեցաւ հանդերձ բնութիւնն անհուն,
Առաւել քաղցր հնչեցին տիեզերաց դաշնակութիւնք,
Եւ ոսկեթոյր մանկութեան աւուրք կենաց գեղածաղիկ ,
Հիւսեալք ընդ վարդս ի մի փունջ առաջնորդեալք ի յուսոյ,
Ինձ յանդիման եկեալ ըղձէք անձն իմ լըցին անուշութեամբ․
Ո՛վ, քո՛յր իմ, թէեւ ընդ հուպ ակնարկեսցէ ինձ մահ խոժոռ ,
Ի մի համբոյր եւ ի նայեացդ կեցից ես դարս բիւրապատիկ ։

Ցարեաւ Քընարս ի գեղգեղել, այլ ոչ եւս էր նազելին այն․
Մահկանացու այն հրեշտակ, թէպէտ անթեւ, այլ չոյտ փախեաւ․
Եւ ո՞ւր արդեօք ծածկեցար դու․․․ յեղի՛ է յոյժ յետինն ողջոյն ,
Որ անճաշակ ի քաղցրութեան զընայ յետին համբուրի ։

---

փափկալուր բարեբաստիկ ձայնէդ արթննայ հոգիս նորոգուած ու առոյգ հասակիս թարմութիւնը, երիտասարդ կեանքիս ծաղիկները քեզի պիտի նուիրեմ․ քեզի համար իմ քնարիս տխուր լարերը պիտի զուարթանան, քու ցանկալի չքնաղ անունդ միայն մրմնջելով․ եկո՛ւր, ափսոսալի իմ նազելիս․ յորմէհետէ քեզ տեսայ, երանութիւնը լուսածղի թեւերով ինծի փարեցաւ, անհուն բնութիւնը շատ աւելի լուսապայծառ հանդերձ մը զգեցաւ, տիեզերքի դաշնակութիւններն աւելի քաղցր հնչեցին, եւ ոսկեթոյր մանկութեան գեղածաղիկ օրերը, վարդերու հետ մէկտեղ փնջուած ու յոյսէն առաջնորդուած, դիմացս գալով՝ խեղճ հոգիս անուշութեամբ լեցուցին․ եկո՛ւր, ո՜վ քոյրս, թէեւ ընդհուպ մահն ինծի խոժոռ պիտի նայի, քու մէկ համբոյրովդ ու մէկ նայուածքովդ՝ բիւրապատիկ դարեր պիտի ապրիմ ։»

Քնարս եկաւ գեղգեղելու, բայց ա՛լ չկար այն նազելին․ մահկանացու այն հրեշտակը, թէպէտ անթեւ, բայց շուտ փախաւ․ եւ ո՞ւր արդեօք ծածկուեցար դուն․․․ շատ լեղի է վերջին ողջոյնը, որ կ'երթայ առանց յետին համբոյրի մը քաղցրութիւնը ճաշակելու ։ Տրտմագնեցիկ Քնա՛րս, եկո՛ւր ինծի հետ, ալ չպիտի խաղաս․ գիտե՛մ, եղերերգները քեզի աւելի հաճոյ են եւ յարմար ։

*Տրտմազդեցիկ իմ Փընա՛ր, ե՛կ ընդ իս այլ ոչ խաչնեցիս ,*
*Առաւել հաճոյ եւ անկ՝ գիտեմ՝ իցեն քեզ եղերերգք ։*
*Ի խորշ ուրեք Վոսփորոսի բըլուր մի կայ ապառաժուտ*
*Որ զինքն ի ծովըն նայի ծիծաղ ծաւալ առ իւր ոտիւք.*
*Ոչ առ նովաւ ոսկեհունձ ծածանին մարգք եւ արտորայք,*
*Ոչ վարսագեղ ծառոց շարք, ոչ արծաթի ջուրց խոխոջանք.*
*Հողմն որ անդէն փըչէ ըզթեւս թացեալ յալիս Ելլեսպոնտեայ,*
*Տխրագին թափառի զի չէք ծաղիկ առ ի զգուել.*
*Ո՛չ անդ չըքեղ դաստակերտք, ո՛չ հանգըրուանք անդէորդաց,*
*Այլ ի գագաթըն մի ծառ եւ մի բնակիչ կայ ընդ ծառով ,*
*Մի բնակիչ անդ ընդ ծառով, եւ այն ծածկեալ է ի հող,*
*Եւ այն եղբայր իմ է, աւա՛ղ, բարձեալ յինէն վաղամեռիկ ։*
*Եղբա՛յր իմ. դու ընդ այս ծառովս ախորժէիր բազմի ըստէպ,*
*Որ զհովանին շնորհէր քեզ. ըզփուտ տերեւս իւր արդ սփռէ*
*Ի վերայ շիրմիդ՝ ուր ես բազմիմ տըխուր եւ մըտախոհ.*
*Նախանձեցայ քում հանգստեանդ , ընկա՛լ եւ զիս, ո՛հ, ոչ թողեր*
*Վարատական տերեւոց լինել միակ ընկեր շիրմիդ...*
*Այլ այս ո՞ւստի յանկարծ հնչեն երգք ի ժամուն խաղաղական.*
*Ջինջ ի Նրշոյլ լուսնակին որ ծիծաղի յերեսըս ջուրց*
*Բազմահոյլ գիտեմ ամբոխ երկայնաձիգ առ ծովափամբ,*

---

*Վոսփորի մէկ խորշը՝ բլուր մը կայ ապառաժուտ, որ իր ոտքը տարածուած ծիծաղկոտ ծովուն մէջ զինքը կը դիտէ. անոր վրայ ո՛չ ոսկեհունձ արտեր ու մարգեր կը ծածանին, ո՛չ վարսագեղ ծառերու շարքեր, ո՛չ արծաթէ ջուրերու խոխոջանքը. հովը որ հոն կը փչէ, թեւերը Ելլեսպոնտեայ ալիքներուն մէջ թրջելով, տխրագին կը թափառի, վասնզի ծաղիկ չկայ զգուելու. ոչ շքեղ դաստակերտներ կան հոն, ոչ անդէօրդներու հանգրուաններ, այլ գագաթը՝ ծառ մը, եւ ծառին տակ բնակիչ մը կայ, բնակիչ մը հոն ծառին տակ, եւ ան հողուն մէջ ծածկուած է. եւ աւա՛ղ, եղբայրս է ան, որ վաղամեռիկ ինծմէ խլուեցաւ։ Եղբա՛յրս, դուն կ'ախորժէիր յաճախ նստիլ այդ ծառին տակ որ իր հովանին քեզի կը շնորհէր. հիմա իր փտտած տերեւները կը սփռէ շիրմիդ վրայ, ուր ես կուգամ նստիլ տրտում ու մտախոհ. Նախանձեցայ քու հանգիստիդ. զիս ալ ընդունէ՛ քովդ. ո՛հ, պիտի չձգեմ որ վարատական տերեւներն ըլլան շիրմիդ միակ ընկերները։*

*Բայց ո՞ւրկից յանկարծ կը հնչեն այդ երգերը՝ խաղաղական այս ժամուն. ջինջ նշոյլովը լուսնակին որ ջուրերուն երեսը կը ծիծաղի,*

Ծեմ ըզձեմի եւ զուարթառատ խայտան ի գիրկ ըզբօսանաց.
Աստեղք, կաճառք լուսաւոր որ ի կամար ցոլան երկնից,
Թըւին ըզխինդ եւ զբերկրանս տեղալ յերկիր ընդ շող լուսեանց.
Ի զեփիւռին մեղմիկ շունչ եւ ի գեղգեղ երաժշտաց
Սահարկեալ գընան մարդիկ երջանկութեան յալիս վըճիտ.
Աստ ուր կամ՝ չիրիմ մահու, եւ անդ հաճոյք բերկրապատար.
Ա՛յ ղջամի մօտ իրերաց սուգ արտմութիւն եւ հեշտ վայելք...
Այլ գիշերըն տխրամած անձ պատէ տակաւ զերկիր
Զերդ սեւադէմ թշուառութիւն զոսկեղինիկ աւուրց ըզդէմս.
Լռեցին նըւագք եւ ամենայն ընկլաւ ի խորըս մըթութեան։
Այլ դու կա՛ց մընա՛, լուսին. մի՛ զմտերիմդ թողուցուս զուրկ,
Մի՛ եւ զայս վէմ ցրտահար. ո՛հ, սիրեցի ես ըզլոյս քո
Ի մատաղ տիոց իմոց, զի դալկահար ես իբրեւ զիս.
Իբր յիմ ճակատ եւ ի քոյդ մելամաղձիկ բնակին խորհուրդք.
Սիրեցի ըզփայլդ հեզիկ որպէս զայտսն իմ Նազենկան,
Եւ զճառագայթըս քոյին իբր ոսկեթել զիւր խոպոպիս.
Տե՛ս փշրեմ աստ զիմ քընար. լուսի՛ն՝ մաղթեմ յետին հայցուած,
Մի՛ զուրկ թողուս ըզմըտերմիդ ըզցուրտ դամբան մենաւոր։

---

բազմահոյլ ամբոխ մը կը դիտեմ ծովափին երկայնքը տարածուած. կը ճեմեն եւ զուարթառատ զբօսանքներու գիրկը կը խայտան, Աստղերու լուսաւոր կաճառները որ երկնքի կամարին վրայ կը ցոլան, իրենց շողին հետ երկրիս վրայ խինդ ու բերկրանք կը թուին տեղալ. զեփիւռին մեղմիկ շունչովն ու երաժիշտներուն գեղգեղումը, երջանկութեան ալիքներուն վրայէն մարդիկ կը սահին կ'երթան. Հոս ուր ես կամ՝ մահու չիրիմ, եւ հոն հաճո՛յք բերկրապատար. ո՛յ ղջամի մօտ իրարու ազատ դառնութիւնն ու հեշտ վայելքը։ Այլ գիշերը տխրամած անձ տակաւ երկիրը կը պատէ, ինչպէս սեւադէմ թշուառութիւնը՝ ոսկեղինիկ օրերու երեսը. Նուագները լռեցին եւ ամէն բան մթութեան խորն ընկղմուեցաւ։

Բայց դուն կեցիր, ո՛վ լուսին. մի՛ զուրկ թողուր մտերիմդ, ու այս վէմն ալ ցրտահար. ո՛հ, իմ տղայ հասակէս՝ ես քու լոյսդ սիրեցի, վասնզի տժգոյն ես ինծի պէս. քու ճակտիդ ալ վրայ, ինչպէս իմ, մելամաղձիկ խորհուրդներ կը բնակին. սիրեցի քու հեզիկ փայլդ՝ նման Նազենկան այտերուն, եւ ճառագայթներդ՝ նոր ոսկի թել խոպոպներուն նման. տե՛ս, քնարս կը փշրեմ հոս. լուսի՛ն, լսէ՛ վերջին աղաչանքս, զուրկ մի՛ թողուր քու մտերմիդ ցուրտ դամբանը մենաւոր։

## Խ

## ԵՂԲԱՅՐ ԽՄՔ ՄԵՔ

### ԵՐԳ

Ի բեւր ձայնից՝ բնութեան չըքեղ
Թէ երգք Թռչին սիրողաբար,
Մատունք կուսին ամենագեղ
Թէ որ զարնեն փափուկ քընար,
Ջունին ձայն մի այնքան սիրուն
Քան զանձկալի Եղբայր անուն։
Տո՛ւր ինձ քու ձեռքդ, եղբա՛յր եմք մեք
Որ մըրըրկաւ էինք զատուած.
Բաղդին ամէն ոխ չարանենգ
Ի մի համբոյր ցրուին՝ ի բաց.
Ընդ աստեղօք ի՞նչ կայ սիրուն
Քան զանձկալի Եղբայր անուն։
Երբ ալեւոր Մայրն Հայաստան
Տեսնէ զորդիս իւր քովէ քով,
Սրտին խորունկ վէրքըն դաժան
Քաղցր արտասուաց բուժին ցօղով.
Ընդ աստեղօք ի՞նչ կայ սիրուն
Քան զանձկալի Եղբայր անուն։
Մէկտեղ լացինք մենք ի հընում...
Եկէք դարձեալ յար անբաժան
Խառնենք զարտօսր եւ ըզխնդում
Որ բազմածնունդ ըլլայ մեր ջան.
Ընդ աստեղօք ի՞նչ կայ սիրուն
Քան զանձկալի Եղբայր անուն։
Մէկտեղ յոգնինք, մէկտեղ ցանենք,
Մէկտեղ Թափին մեր քրտինքներ,

Ըղձանձ բարեաց յերկինս հանենք
Որ կեանք տանուն Հայոց զաշտեր․
Ընդ աստեղօք ի՛նչ կայ սիրուն
Քան զանձկալի Եղբայր անուն ։

## ԽԱ

## Ի ՀԱՆԴԷՍ
## ՊԱՐԳԵՒԱԲԱՇԽՈՒԹԵԱՆ ԱՇԱԿԵՐՏՈՒՀԵԱՑ
## ՍՐԲՈՑ ՀՌԻՓՍԻՄԵԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆԻՆ

### ՕՐԹԱԳԻՒՂԻ

### ԱՌ ՀԱՑԿԱԶՈՒՆ ՕՐԻՈՐԴՍ

### ԵՐԳ

Շատ դարերու ցաւերով
Տրտում տըխուր ողբական,
Ի գերեզմանս նստելով
Արցունք թափէ Հայաստան.
Ո՛ կոյսք, փունջ մի քաղեցէ՛ք,
Եկէ՛ք իրեն մօտեցէ՛ք ։
Եւ պար առեալ վայելուչ,
Ո՛վ դուք ծըլպիտք հայ յուսոյ,
Երգեցէ՛ք յերգ սրտառուչ
Ըզդարձ բախտին եւ լուսոյ ·
Ո՛ կոյսք. փունջ մի քաղեցէ՛ք,
Եկէք իրեն մօտեցէ՛ք ։
Փունջ մ՚ալ անգին իմաստից
Եւ գիտութեանց ծաղկունէս ,
Պարկեշտագեղ բարոյից
Որով պարծի նա յաւէտ ·